


### ՎԱԹՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ

Այն ժամանակ շատերիդ պապիկներն ու տատիկները հազիվ ձեր տարիքին լինեին։ Բայց նրանք ձեզ նման ամեն ամառ չէին գնում պիոներական ճամբար ու մանկական առողջարան, ազատ ժամանակը չէին անցկացնում զբոսայգիներում ու սպորտային հրապարակներում։ Նրանք չէին հաճախում դպրոց և չունեին ո՛չ ուսումնական տարի, ո՛չ էլ ամառային արձակուրդ։ Ապրում էին խարխուլ խրճիթներում, ցնցոտիների մեջ, կիսաքաղց...

Դառն է եղել ձեր պապիկների ու տատիկների մանկությունը։

Իսկ ինչու՞ է դառը եղել. որովհետև նրանց ծնողները աշխատում էին հարուստների համար և ապրում էին ծայր աստիճան աղքատության մեջ։ Միայն քչերին էր հաջողվում մեծագույն զրկանքների գնով կրթության տալ իրենց զավակներին։ Գործարաններն ու ֆաբրիկաները, հողն ու հանքերը, դպրոցներն ու զվարճության վայրերը պատկանում էին կապիտալիստներին ու կալվածատերերին։ Սրանք չէին աշխատում և վայելում էին բանվորների ու գյուղացիների ստեղծած բարիքները։

# Փառավոր ուղի



Վ. Ի. ԼԵՆԻՆ

Բայց աշխատավոր մարդիկ շուտով հասկացան, որ եթե այդպես շարունակվի, իրենց երեխաները, թոռներն ու ծոռները նույնպես կապրեն կարիքի ու թշվառության մեջ։ Եվ նրանք պայքարի դուրս եկան ցարական կարգերի դեմ։

### ԹԵ ԻՆՉՈՒ ՍՏԵՂԾՎԵՑ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Ցարական կարգերի դեմ ժողովրդի արդար պայքարը բորբոքում ու ղեկավարում էին առաջավոր

ԵՐԿՐՈՐԴ



Գ. Վ. ՊԼԵԽԱՆՈՎ



Ն. Է. ԲԱՈՒՄԱՆ

ՕԳՈՍՏՈՍ
№ 8 1963 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

գաղափարների տեր բանվորները, ուսուցիչները, ուսանողները, որոնց ասում էին հեղափոխականներ: Նրանք այդպես էին կոչվում, որովհետև իրենց առաջ նպատակ էին դրել փոխել եղած անարդար կարգերը և իշխանությունը հանձնել բանվորներին ու գյուղացիներին: Բայց հեղափոխականների խմբերն ու խմբակները, որ ստեղծվել էին Ռուսաստանի, Անդրկովկասի, Ուկրաինայի, Բելոռուսիայի խոշոր քաղաքներում, գործում էին միմյանցից գրեթե անկախ. չկար մի ընդհանուր ղեկավարություն: Առանձին հեղափոխականներ էլ հստակ պատկերացում չունենալով պայքարի եղանակների մասին, մեծ վնաս էին հասցնում ընդհանուր գործին:

Անհրաժեշտ էր բոլոր հեղափոխական խմբերը միավորել մեկ կազմակերպության մեջ, ունենալ միասնական ծրագիր ու կանոնադրություն, որպեսզի հնարավոր լիներ ճիշտ ուղիով տանել ժողովրդին և հաղթանակի հասնել: Ժամանակի ամենամեծ հեղափոխականը՝ Վ. Ի. Լենինը, ասում էր. «Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը»: Եվ հենց ինքը Լենինն էլ ձեռնամուխ եղավ մեր կուսակցության ստեղծմանը:

## ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՆՈՒՆԴԸ

Ռուսաստանում կուսակցություն ստեղծելու առաջին փորձը տեղի ունեցավ 1898 թվականին և անցավ անհաջող: Լենինն այդ ժամանակ գտնվում էր աքսորավայրում: Եվ ահա 1903 թվականի հուլիսի 30-ին Բելգիայի Բրյուսել քաղաքում բացվեց հեղափոխականների երկրորդ համագումարը: Մեր երկրում հնարավոր չէր անցկացնել այդպիսի համագումար, որովհետև ցարական ոստիկանությունը կհայտնաբերեր և իսկույն կձերբակալեր պատգամավորներին: Նրանք գաղտնի անցան ռուսական սահմանը և հավաքվեցին Բրյուսելի ծայրամասում գտնվող ալրի մի պահեստում: Բայց մի քանի օր հետո բելգիական ոստիկանությունը գլխի ընկավ և սկսեց հետապնդել նրանց: Պատգամավորները ստիպված եղան տեղափոխվել Լոնդոն և նիստերը շարունակել ծկնորսների ակումբներում: Այստեղ էլ նրանք ազատ չէին և հարկադրված էին օրը մի տեղ հավաքվել:

Երկրորդ համագումարը, որին մասնակցում էր ավելի քան 50 պատգամավոր, տևեց մինչև օգոստոսի 23-ը և անցավ բուռն վեճերի ու պայքարի մթնոլորտում: Համագումարի կենտրոնական դեմ-

## ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԸ



Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ



Բ. Մ. ԿՆՈՒՆՅԱՆՑ



Ռ. Ս. ԶԵՄԼՅԱՉԿԱ



Ա. ԶՈՒՐԱԲՅԱՆ

քը Վ. Ի. Լենինն էր։ Նա իր գիտելիքների ամբողջ ուժով մերկացրեց բոլոր սխալ, հակահեղափոխական հայացքները և ասաց, թե ինչպիսին պետք է լինի իսկական կոմունիստական կուսակցությունը։ Համագումարի օրերին արձանագրված է Լենինի 130 ելույթ, ռեպլիկ և ուղղում։ Լենինի տեսակետը պաշտպանում էին Բաումանը, Կրուպսկայան, Կնունյանցը, Ջուրաբյանը և շատ ուրիշ ականավոր հեղափոխականներ։ Համագումարն ավարտվեց Լենինի և նրա կողմնակիցների հաղթանակով։

Լենինի տիտանական ջանքերով ստեղծվեց մեր կուսակցությունը, որն այժմ կոչվում է Սովետական Միության կոմունիստական պարտիա (ՍՄԿՊ)։

## ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԼՈՒՍԱՐՁԱԿԸ

Այդ օրերից անցել է ընդամենը վաթսուն տարի։ Դա պատմության համար շատ կարճ ժամանակամիջոց է։ Բայց վաթսուն տարիների ընթացքում մեր երկրի կոմունիստական կուսակցությունը փառավոր ուղի է անցել։ Լենինի գլխավորությամբ նա՛ ոտքի հանեց բանվորներին ու գյուղացիներին, կործանեց ցարական կարգերը և ազատագրեց լայնածավալ Ռուսաստանի ժողովուրդներին։ Այդ նա՛ էր, որ կապիտալիստներից ու կալվածատերերից խլեց գործարանները, հողը, հանքերն ու մյուս հարստությունները և տվեց աշխատավորներին։ Այդ նա՛ էր, որ ամենուրեք ստեղծեց դպրոցներ ու կուլտուրայի օջախներ և երկրից վերացրեց համատարած անգրագիտությունը։ Մեր կուսակցությունը ժողովրդի գլուխ անցած՝ ջախջախեց սոցիալիստական հայրենիքի բոլոր տեսակի թշնամիներին և երկիրը դարձրեց աշխարհի ամենահզոր, առաջավոր երկիրը։

Ալրի պահեստում ու ծկնորսների ակումբներում ծնված լենինյան կուսակցությունը այժմ դարձել է մի վիթխարի ուժ և պայծառ լուսարձակի նման լուսավորում է ամբողջ մարդկության զարգացման ուղին։ Մեր կուսակցության օրինակով բազմաթիվ երկրներում կոմունիստները կործանեցին եղած կարգերը և իրենց ժողովուրդներին ազատեցին դարավոր ճնշումից։

Այժմ մեր կուսակցության իմաստուն ղեկավարությամբ ու անմիջական աշխատանքով սովետական ստեղծագործ ժողովուրդը կառուցում է կոմունիստական հասարակարգ՝ կոմունիզմ, որտեղ նյութական բարիքների այնպիսի առատություն կլինի, որ բոլորը կապրեն ըստ պահանջի։

Սովետական Միությունում կա ավելի քան տասը միլիոն կոմունիստ։ Դրանք մեր երկրի առաջավոր բանվորներն ու կոլտնտեսականներն են, լավագույն բժիշկներն ու ուսուցիչները, անխոնջ շինարարներն ու պետական ծառայողները։ Չկա ավելի մեծ պատիվ, քան լինել լենինյան կուսակցության անդամ, այն կուսակցության, որը դարձել է առաջադեմ մարդկության ավանգարդը, լուսատու աստղը։ Եվ դու, պատանի ընթերցող, որ այսօր դաստիարակվում ես կոմունիստական մանկական կազմակերպության մեջ, տարիներ հետո կընդունվես լենինյան կուսակցության մեջ։ Սրբությամբ կատարիր Իլյիչի պատգամները, որ արժանի լինես այդ մեծ պատվին։

Գ. Մ ԱՐՏԻՐՈՍՅԱՆ



# ՆՈՐԻՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻՍ ՀԵՏ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

## ՇԱՔԱՐԿԵՆԻՆ

Ես նրան հանդիպեցի Արաքսի կիրճում, լերկ ու մռայլ ժայռերի մեջ, որտեղ մարդիկ, ո՞վ գիտե, ո՞ր հազարամյակում ժայռեղեն գյուղ են հիմնել, ժայռերը կտրտելով՝ ջրի մի բարակ ճանապարհ բացել, մի ափ հողապատառի վրա ծառ տնկել, այգի ըստեղծել:

Հրաշք է թվում մրկած ժայռերի խառնարանում կանաչ օազիս այդ գյուղը: Բայց այդ գյուղում հրաշք են համարում լերկ ժայռի գրկում տուն ու բուն դրած մենավոր շաքարկենին:

Խնձորենի է: Ոչ ոք չի կարող որոշել, թե քանի հարյուր տարեկան է նա: Սև թրթուրն է կերել նրան, կայծակն է ճոթել նրա բունը, կարկուտը պատռոտել կարմրավուն կեղևը: Բայց ապրել է նա: Երբեմն չորացել է մինչև բուկը, սակայն կենդանի են մնացել արմատները: Նոր շիվ է արձակել, նորից ծառ դարձել:

Ես նրան հանդիպեցի փետրվարի տասնհինգին: Լավ հիշեցեք, փետրվարի տասնհինգին: Ժայռի ուսերին էլ ձյուն կար, տակն էլ, հոնքերին էլ: Արաքսը մրափած էր ձմեռային կապանների մեջ: Մրափած էր աներես հոնին, սալորենին՝ սառած: Իսկ այս շաքարկենի՞ն:

Ես կանգնած եմ նրա դեմը: Նա արթուն է: Նա ժպտում է: Նա ծաղկել է: Զուգվել է կարմրասպիտակ ծաղիկներով՝ ժայռի հովանու տակ, ժայռի ցուրտ ափի մեջ: Իսկ ժայռի ուսերին ձյուն է, և ձնծաղիկը դեռ չի հասցրել իր կրակ լեզվակով պատռել ձյունե շապիկը: Զմռան անդորրով քնած է Արաքսի կիրճը:

Իսկ այս շաքարկենի խնձորենին ծաղկել է: Ծաղիկները բույր ունեն, խոշոր են՝ պտուղ-պտուղ և բաց՝ իրենց ողջ հմայքները ի ցույց դրած:

— Սխալվե՞լ է,— հարցնում եմ հին այգեգործին:— Շտապե՞լ է:

— Ի՞նչը, շաքարկենի՞ն. Ո՛չ, ամեն տարի ծաղկում է նույն օրը՝ փետրվարի տասնհինգին:

— Ասել է՝ շու՞տ է արթնանում:

— Չի էլ քնում:

Ո՛չ շատ բարձր է ծառը, ո՛չ էլ շատ ցածր: Մեջքըն ուղիղ է, գլուխը՝ խոնարհ, ճյուղերը հավաք են, բունը՝ հաստատուն:

— Պտուղը քա՞ղցր է,— նորից հարցնում եմ ծեր այգեպանին:

— Համը չենք տեսել:

— Ինչու՞:

— Չի հասնում: Վերևի ձյուներին նայի՛ր:

Խեղճ շաքարկենի... Ծաղկում ես ձմռվա ցուրտ օրերին, արհամարհելով ժայռերի վրա-գլխի ձյունը, ցուրտը, սառնաշունչ հողմերը:

Սպասի՛ր, է՛, սպասիր ու ծաղկիր գարնանը, ինչպես ծաղկում են քո բոլոր ցեղակիցները: Սպասի՛ր, է՛, ինչու՞ ես շտապում:

— Որ ուրախություն բերի մեզ,— հարցս մեկնում է այգեպանը:— Շտապում է, որ գարնան բույր տա մարդկանց, որ մարդիկ երկար կարոտով չսպասեն գարնան գալուն, որ հարս գնացող աղջիկները, ի հեճուկս ձմռան ցրտերին, իրենց կրծքերը զարդարեն իր ծաղիկներով, որ հողն անզարդ չմնա:

Հրաշք է այս շաքարկենին: Պտուղը չի հասնում: Երբ մարտին ծաղկում է նշենին, դեղին հրդեհով պատվում հոնին, ճերմակ շապիկ հագնում սալորենին, մեր շաքարկենուց ընկնում է վերջին ծաղիկը: Ընկնում է, բայց ծառն էլի ուրախ է մնում ուրիշի ուրախություններով: Ուրախ է մնում, որ իր գործն արել, պրծել է, որ ձմռան կեսին է գարուն բերել մարդկանց, որ այդ գարունը հանձնել է ծիրանուն, նշենուն, ապա տվել իր ցեղակիցներին, ողջ ձորին, աշխարհին:

Ի՜նչ փույթ, որ ինքը պճնազերծվել է ձմռան մի խելառ սառնամանիքից: Ի՜նչ փույթ... Չէ՞ որ ինքն է առաջինը գարուն բերել:

Դժվար է առաջինի բանը:

Առաջինն անձնազոհ է լինում:

## Ճամբարում

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԹԱԿՅԱՆ

Վրաններ անվերջ, վրաններ խաղաղ,
Փռվել են. ծաղկած սարերի գրկում,
Եվ շուրջը նրանց անտառը չքնաղ
Անուշ սոսափով օրոր է երգում:

Կապույտ երկինքն է ճեղքում թևաբաց
Աղավնիների երամը ճերմակ,
Իսկ գայլի ճանկից եղնիկը փախած՝
Գալիս մտնում է մեր վրանի տակ:

Իրիկնամուտին, հունով իր նեղլիկ
Վճիտ առվակն է երգելով հոսում,
Երբ քնում է մեր ճամբարը փոքրիկ,
Երկինքը կապույտ երազ է հյուսում:

# ԽԻԶԱԽ ԾԻԾԵՌՆԱԿԸ

Գարնանային իրիկնամուտ էր: Անթիվ երեխաներ էին հավաքվել զբոսայգում: Նրանք ամեն գույնի մեծ ու փոքրիկ փուչիկներ ունեին: Երբեմն մի անհնազանդ փուչիկ պոկվում էր տիրոջ ձեռքից ու թռչում...

Ահա փախավ մուգ կարմիր մեկը, ամենից մեծը, թեթևը: Օրորվելով, խայտալով նա բարձրանում էր դեպի պարզ երկնքի կապույտը... Իսկ այնտեղ, բարձունքից սառիճանաբար իջնող ծիծեռնակներ էին ճախրում զվարթ ճռվողյունով: Նրանք տեսան անհնազանդ փուչիկը և սկզբում մեկ-մեկ, ապա խումբ-խումբ, սկսեցին պտտվել փուչիկի շուրջը: Հաճախ մեկն ընդհուպ մոտենում էր նրան և ահից շեշտակի շուռ գալով՝ փախչում: Կային այնպիսի համարձակները, որ գրեթե քսվում էին փուչիկին, բայց նորից ճչալով մի կողմ էին նետվում:

Երեխաները զվարճանում էին, թռչկոտում, ալմըկում: Սպասկանում էր նաև ծիծեռնակների տագնապալի աղմուկը: Նրանց խիստ անհանգստացնում էր «անկոչ հյուրը», որին, ո՞վ գիտե, գարնան այդ ավետաբերներն ինչի՞ տեղ էին դրել:

Շուտով կատարվեց զարմանալի մի բան: Մի ծիծեռնակ պոկվեց երամից ու շեշտակի սլացքով հարվածեց փուչիկին: Փուչիկը մի կողմ նետվեց: Համարձակ ծիծեռնակը մի պտույտ կատարեց նրա շուրջը և, թափ առնելով՝ նորից զարնվեց նրան:

—Պայթե՜ց...—դղրդաց երեխաների ուրախ ձայնը:

Սակայն այդ ուրախությունն իսկույն կտրվեց: Խիզախ ծիծեռնակը պայթեցրեց վտանգավոր փուչիկը, բայց խճճվելով նրա կպչուն ծվենների մեջ, նրա հետ գունդ ու կծիկ դարձած սկսեց ընկնել ցած...





Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Երեխաների հետ անհանգստացան նաև մեծերը:

— Հիմա կջարդվի գետնին զարնվելով:

Փուչիկի ծվեններում կոլոլված թռչնակը մոտենում էր գետնին: Ապա նա իջնում է հենց իմ գլխավերևը: Ես հասցրի դեռ օդում բռնել վանդակ ընկած ծիծեռնակին:

Անհագին փուչիկի ծվենները փաթաթվել էին խեղճի գլխին, ոտքերին, թևերին: Թռչնակը հերոսաբար պայքարում էր, բայց չէր կարողանում ազատվել որոգայթից: Թեև նա մատս մի երկու անգամ կծեց, բայց ես օգնեցի նրան, ծվեններից ազատեցի ու բաց թողի...

Նա սլացավ դեպի իր ընկերները:

Երեխաներն իրենց բոլոր փուչիկները բաց թողին դեպի պարզ երկնքում խլրտացող ծիծեռնակները, բայց այլևս ոչ մի թռչնակ չմոտեցավ նրանց:

Գլխի էին ընկել, որ փուչիկները որոգայթներ են: Իրենց անձնազոհ ընկերն էր իր կյանքը վտանգելով՝ հայտնաբերել այդ նորագույն որոգայթը:

# ՄԱՅՐԸ

(Հայկական ավանդություն)

Շատ որդիների ու հարսների տեր մի մայր է լինում: Մեծ տուն, հազար հոգս, եփել-թափել, սրբել, լվանալ: Մայրն այլևս չէր կարողանում աշխատել, բայց նրա ձայնը չէր դադարում.

— Ա՛յ հարսներ, կովը կթե՞լ եք:

— Ա՛յ որդի, հանդերն այս տարի լի՞քն են:

— Ա՛յ թոռնիկս, ծծկերին որորի՛ է՛...

Ծեգից մինչև ուշ գիշեր անխոնջ-անդադար խոսում, խրատում, կարգադրում էր ծերացած, գործից-բանից ընկած պառավը:

— Հավերին կուտ տվեք:

— Գոմշաձագը տարեք ջրի:

— Գտոները գոմն արեք:

Ինչքան էլ որդիները խնդրում են, թե՝ այ՛ մեր, քո ի՞նչ բանն է, դու տեղդ նստիր, կեր, խմիր, հանգստացիր, բայց չի լինում: Պառաված մայրն իր ջրաղացն է աղում: Նույնիսկ գիշերները տագնապով արթնացնում էր բոլորին.

— Գնացեք էն ներքին արտը քաղհանեցեք:

— Էն բաղի առուն բացե՞լ եք:

Այսպես ամեն օր, ամեն ժամ: Ո՛չ գիշեր էր հարցնում, ո՛չ ցերեկ, ո՛չ մեծ, ո՛չ փոքր: Այնքան է բոլորին անհանգստացնում, քնահարամ անում, որ նրա որդիները մի իրիկուն նրան վերցնում, դնում են հանգած թոնրի մեջ և կարգադրում այլևս չխոսել, իրենց քունը չխանգարել: Թոնիրը ծածկում են կարպետով, իրենք պառկում քնում:

Գիշերվա մի ժամանակ գառան աղեկտուր մայուն են լսում: Զարմացած վեր են կենում, ականջ դնում: Ականջ են դնում, տեսնում մայրն է թոնրի մեջ գառան պես մայում: Թոնրի վրայի կարպետը ետ են քաշում, թե.

— Ա՛յ մեր, ինչի՞ ես գառան պես մայում, ի՞նչ է պատահել:

— Հե՛չ,— անհանգիստ պատասխանում է մայրը.— Ուզում եմ իմանալ գառները գո՞ռն եք արել, թե չէ: Աշնան գիշեր է, գել, գազան կգան, վնաս կտան:




*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Նամակներ են իրար գրում
Աշխարհներից հեռու թե մոտ,
Նամակներն են կտրում հեռուն,
Բարև տանում, բերում կարոտ:
Կա նրանց մեջ անմեղ մի հուր,
Եղբայրության սեր ու ծարավ,
Նրանք գնում, գնում են լուռ,
Իրար կապում հյուսիս, հարավ:
Երևանից մեր Սոսն ահա
Նամակներ է Սիբիր ճամփում,
Այս ամռան պես խոսքը նրա
Ջերմություն է այնտեղ թափում:
Իսկ ընկերոջ նամակներից
Սոսն զգում է անտառի բույր,
Կարծես տեսնում է ամեն ինչ,
Իրտիշ գետն էլ հոսում է լուռ:
Արտաշեսն ու սևաչ Նունեն
Խնդությունից ուզում են լալ՝
Լենինգրադում ընկեր ունեն
Եվ տուն ունեն մի հյուրընկալ:
«Ավրորան» են տեսել կարծես,
Նամակներով սիրել նաև,
Իսկ Գալինան գեղեցկատես՝
Երազում է հասնել Սևան:
Այնքան շատ են այդ թևավոր
Նամակները Մոսկվա գնում,
Որ հյուրերին կանչենք մի օր,
Տեղ չի լինի Երևանում:
Ճամփորդում են նրանք անձայն,
Տանում կյանքի սերն ու բարին,
Երգն են ասում մտերմության
Իրենց երկար ճանապարհին:
Բույր են տանում ու զով գարուն,
Առավոտ են տանում բարի,
Թող երկարի այս աշխարհում
Ճանապարհը նամակների:



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

# Լճակը

**ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**

Ջնայած վաղ լուսաբաց էր, բայց Գագիկն արդեն արթնացել էր քնից, լվացվել ու դուրս եկել բակ։ Դարպասի մոտ տղաները ինչ-որ բան էին խոսում։ Մոտենալով, Գագիկը ձեռքը տարավ անդրավարտիքի գրպանը և, հպարտորեն կուրծքը դուրս գցած, կանգնեց նրանց կողքին։

Վիճում էին։ Գնալու էին հարևան բակի տղաների հետ ֆուտբոլ խաղալու, բայց դեռ չէին պարզել, թե ում պետք է վստահեին իրենց դարպասը։

— Գառնիկի ամեն մի թռիչքը միլիոն արժե,— տաքացած ձեռքերն օդում թափահարելով հավատացնում էր Վաչիկը։

— Իսկ ես, որպես թիմի ավագ, գտնում եմ, որ Արամայիսից լավը չկա,— համառորեն պնդում էր Վարդանը։

— Իմ կարծիքով Վարդանը ճիշտ է ասում,— բոլորի համար անսպասելիորեն հնչեց Գագիկի ձայնը։

— Պա՛հ, մի սրա՛ն նայեք. «իմ կարծիքով»։ Քո կարծիքը պահիր ծեր մանկապարտեզում կհայտնես,— արհամարհանքով շպրտեց Վաչիկը։

— Ինչու՞ ես անմեղ տեղը տղային վիրավորում,— զայրացավ Վարդանը։

Գուցե վեճը սաստկանար, եթե սրանց չմոտենար հարևան բակի տղաների կողմից ուղարկված ներկայացուցիչը՝ ցածրահասակ ու վտիտ մի տղա, որը ի դեպ, այդ օրվա ֆուտբոլի մրցության դատավորն էր լինելու։

— Մերոնք վաղուց արդեն պատրաստ են, իսկ դուք ի՞նչ բանի եք,— լռություն տալով ձայնին հարցրեց նա։

— Տակտիկական հարցեր էինք մշակում,— ավելի լուրջ պատասխանեց Վարդանը, և դիմելով յուրայիններին, ասաց.— Դե՛հ, գնացինք։

Տղաները Վարդանի գլխավորությամբ անմիջապես շարքի կանգնեցին և սպորտային թեթև վազքով ուղղվեցին հարևան բակի կողմը։

Գագիկը, որն առանց հրավերի շարք էր կանգնել և վազում էր ամենավերջում, ուրախությունից գլուխը կորցրել էր։ Ինչպե՞ս չուրախանար, երբ շարքում գտնվող տղաները իրենից մի քանի տարով մեծ էին, իսկ ինքը նրանց հետ վազելիս ոչ մի քայլ ետ չէր մնում։

Փողոցի մեջտեղում ասֆալտը նստել էր ընկել և անձրևաջրից այնտեղ պղտոր լճակ էր գոյացել։ Ջնայած լճակի երկու կողմից էլ անց ու դարձի համար բավականին լայն տարածություն կար, բայց տղաները չշեղեցին իրենց ճանապարհը։ Նրանք առանց դժվարության մեկը մյուսի հետևից ցատկեցին լճակի վրայով։ Գագիկի համար այդ արգելքը չափազանց անսպասելի էր. նա վախեցած մեխվեց տեղում։



Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Հը՞, երամից ետ մնացած թռչնակ, ինչու՞ ես շվարել,— լսվեց ինչ-որ մեկի արհամարհալից ձայնը։ Հարևան բակի նիհար տղան էր։

Գագիկը ամոթից շառագունեց։ Անելանելի վի-

*ճակից դուրս գալու համար անցավ հարձակման:*

*— Ես պահեստային խաղացող եմ, դու քո մասին մտածիր, որ այսօրվա մրցության դատավորն ես, բայց չես համարձակվի թռչել այս լճակի վրայով:*

*— Եթե ես էլ քեզ նման փոքր ու վախկոտ լինեի, գուցե չհամարձակվեի,— չարախնդաց հարևան բակի նիհար տղան և առանց հապաղելու համարձակ ցատկեց լճակի վրայով ու գնաց:*

*Հարևան բակի նիհար տղայի հեռանալուց հետո, չգիտես ինչու, Գագիկն իրեն մենակ ու լքված զգաց: Նրան թվում էր, որ բակի տղաները դիտավորյալ չշրջանցեցին լճակը, որպեսզի հասկացնեին իրեն, որ նա դեռ փոքր է ու վախկոտ և իզուր է փորձում ոտք մեկնել... Եթե իրոք այդպես է, ուրեմն դուրս է գալիս, որ փողոցի մեծահասակ անցորդները՝ բոլորն էլ փոքր են ու վախկոտ, որովհետև նրանք այս պղտոր լճակի վրայից ցատկելու փոխարեն, հանգիստ քայլում են հարթ ու մաքուր ճանապարհով: Բայց մի՞թե փողոցի անցորդներից որևէ մեկը «երամից ետ մնացած թռչնակի նման կշվարեր» (ինչպես հարևան բակի նիհար տղան ասաց), եթե նրա բոլոր ընկերները համարձակ ցատկած լինեին այս փոքրիկ լճակի վրայով: Վերջին բառերի վրա խորհելիս՝ Գագիկը մի պահ նայեց պղտոր լճակին և զգաց, որ իրականում նա այնքան էլ փոքր չէ... իսկ եթե շրջանցեր, միևնույն է, իրենց բակի տղաներից ոչ մեկը չէր տեսնի... Բայց ո՛չ, դա պարզապես վախկոտություն կլիներ և մի տեսակ անազնիվ արարք, որի համար Գագիկն ինքն իրեն չէր ների: Հիմա այնտեղ Վարդանը ո՛վ գիտե որերորդ գնդակն է անցկացրել «հակառակորդի» դարպասով, իսկ ինքը խեղճացել է ու կծկվել սառած դողդոջի նման...*

*Հանկարծ մի անբացատրելի համարձակություն ծնվեց Գագիկի մեջ: Նա մի քանի քայլ ետ գնաց և արագ վազքով, որքան ուժ ուներ, ցատկեց:*

*Լսվեց մի թույլ ճլըմփոց: Պղտոր ջուրը ցայտեց վեր և գորշ գույնով ներկեց Գագիկի անդրավարտիքն ու վերնաշապիկը, իսկ կոշիկները լրիվ ցեխոտվեցին:*

*Եթե նույն բանը տեղի ունենար մեկ ուրիշ անգամ, Գագիկը լաց լինելով կգնար տուն: Բայց ահա նա մազաչափ անգամ չվշտանալով՝ դուրս եկավ ցեխաջրից և հաղթական քայլերով գնաց դեպի հարևան բակը:*

*Խաղն արդեն սկսված էր: Գագիկը նստեց իրենց դարպասի մոտ և սկսեց կլանված դիտել:*

*Վարդանը հիանալի էր խաղում: Ջնայած «հակառակորդի» պաշտպաններից երեք հոգի ստվերի նման անընդհատ հետևում էին նրան, բայց Վարդանը ճարպկորեն խափս էր տալիս և սրընթաց գրոհում դարպասի վրա:*

*Մեկ ժամ անց, մրցության դատավորը՝ հարևան բակի նիհար տղան, ձեռքի մատները մոտեցնելով շուրթերին, երկարաձիգ սուլոցով ազդարարեց ֆուտբոլային մրցության ավարտը:*

*Արդյունքը չափազանց գոհացուցիչ էր 4:0 հօգուտ Գագիկենց թիմի:*

*— Ուռա՛.— ներկաների համար անսպասելիորեն լսվեց Գագիկի հրճվալից ճիչը:*

*— Յա՜, այս ցեխոտված նապաստակը որտեղի՞ց լույս ընկավ.— ծիծաղեց դատավորը:*

*Հարևան բակի պարտված տղաները սկսեցին բարձրաձայն հռհռալ:*

*Գագիկը բոլորովին էլ չվշտացավ: Այդ էր պակաս: Ինչու՞ վշտանար, երբ իրենց բակի տղաները «չոր» հաշվով հաղթել էին նրանց, իսկ ինքը եկել էր հաղթողների անցած ճանապարհով:*

# ԿԱՐՄԻՐ ԿԱԿԱՉ

*ՎԱՉԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Մամռակալած ժայռի շուրթին
Բացվել ես դու, կարմիր կակաչ,
Բոցկլտում ես մայրամուտին՝
Շուրջդ առվի խինդ ու կարկաչ:

Տե՛ս, հանգչում է արփին խաղաղ,
Դու էլ փակիր թերթերդ հեզ:
— Չէ՛, դեռ վաղ է, փոքրիկ տղա,
Սպասում եմ աստղերին ես:

Կուզեմ տեսնել երկինքը ջինջ,
Ըմպել նրա ցողը զուլալ:
Զգույշ, հանկարծ չպոկես ինձ,
Որ չխամրի երազս ալ:

— Մի վախենա, քնքուշ կակաչ,
Շաղ տուր շողը քո թերթերի,
Դու այս ժայռի շունչն ես անանց
Եվ ժպիտը ջար շուրթերի:




*(Հերիար)*

Օրը գեղեցիկ էր. երկինքը մաքուր. բոցավառ արևը ճառագայթները սփռել էր չորս կողմ. ծաղիկների բուրմունքը տարածվել էր օդում: Եվ այս ամենի մեջ կանգնել էր մի գեղեցիկ, լացող ուռի:

Այս փոքրիկ ուռին սովորություն ուներ վաղ արշալույսին արթնանալ, կռանալ առվակի վրա, նրա ջրերում դիտել իր պատկերը և ուրախ ասել.

— Ի՜նչ գեղեցիկն եմ...

Գիշերները նա քնում էր ուրախ ու երջանիկ, որովհետև ցերեկը իր ճյուղերում հանգստանում էին խումբ-խումբ թռչնիկներ, որոնք գոհ ու երջանիկ ասում էին.

— Ի՜նչ լավ է այստեղ...

Բայց մի օր, երբ ուռին ուզում էր աչքերը փակել ու քնել, տեսավ լուսնյակին, որը առվակի միջից իրեն էր նայում ծաղրական ծնով՝ ու ասում.

— Վա՜յ... ինչ տգեղ ես: Ճյուղերդ գետնին կախված, լալկան. վա՜յ, վա՜յ:

Փոքրիկ ուռին դողաց ցավից: Աչքերը փակեց, որ չտեսնի լուսնյակի ծաղրական հայացքը: Այնքան տառապեց, որ ամբողջ գիշերը չկարողացավ քնել ու լաց եղավ: Որքան լաց էր լինում, այնքան ավելի էին ճյուղերը կախվում ցած:

Առավոտյան փոքրիկ Պոլը պարտեզ դուրս գալով՝ ուրախությամբ բացականչեց.

— Օ՜հ, աստված իմ...ի՜նչ գեղեցիկն է, որքան մեծացել է իմ ուռին, և ճյուղերն էլ որքա՜ն շքեղորեն կախվում են դեպի վար:

Լսելով այս խոսքերը, փոքրիկ ծառի սիրտը լցվեց երջանկությամբ: Բացեց աչքերը, նայեց ջրի մեջ և տեսավ, որ իսկապես լավիկն է ինքը: Տեսավ, որ հիմա իրեն նայողը լուսնյակը չէր, այլ արևը, որը ժպտում էր իրեն և շշուկով ասում.

— Սիրուն ուռի, մի՛ տրտմիր, լուսնյակը պարզապես նախանձում է քեզ. հանգիստ եղիր, խոսք եմ տալիս, որ էլ նա չի գա, քեզ չի՛ վշտացնի:

Լսելով այս բարի խոսքերը՝ ուռին ուրախացավ:

Երեկոյան ուռենու քունը տանում էր, բայց նա չէր քնում, սպասում էր լուսնյակին: Շատ սպասեց, բայց լուսնյակը չերևաց առվի մեջ, այլ նայում էր նրան վերևից: Արևը մի լավ հանդիմանել էր լուսնյակին, նա ամաչել էր իր չարությունից ու աչքերը խոնարհել:

Շատ ժամանակ հետո, մի օր լուսնյակը եկավ ուռենու մոտ, որը միշտ անքուն սպասում էր, և ասաց.

— Ներիր ինձ, սիրելի բարեկամ, քեզ ծաղրելու համար: Նախանձում էի քեզ: Դու երջանիկ ես, այնքա՜ն շատ բարեկամներ ունես, որոնք քո ճյուղերում նստում, երգում, ուրախանում են, իսկ ես, ես մեն-մենակ եմ, միշտ մենակ... հասկանու՞մ ես...

— Ոչինչ,—գոչեց փոքրիկ ուռին,—ես ներում եմ քեզ: Միայն թե դու իրավունք չունես ինձ նախանձելու: Նայի՛ր շուրջդ և տես, որ դու էլ բարեկամներ ունես: Չե՞ս տեսնում քո ընկերներին՝ աստղերին, որոնք հիանում են քեզանով... Նայի՛ր...

Այդ ժամանակ լուսնյակը աչքերը վեր բարձրացրեց և տեսավ աստղերին, որոնք իրեն էին նայում հիացած: Եվ հանկարծ տեսնելով այդ բարեկամ աստղերի ժպիտը, իրեն երջանիկ զգաց, ու նախանձը չքացավ:

Փոքրիկ ուռին ասաց նրան.

— Միշտ պետք է շուրջը նայել, չնախանձել ուրիշներին: Բոլորս էլ շրջապատված ենք բարեկամներով: Միայն հարկավոր է գտնել նրանց:



— Ճիշտ ես ասում, փոքրիկ ուռի,—պատասխանեց լուսնյակը: — Դու իմ բարեկամն ես սրանից հետո, շնորհակալ եմ քո բարի խոսքերի համար: Ցտեսություն...

Նույն գիշերը ուռին տեսավ մի գեղեցիկ տեսարան: Մաքուր երկնքում լուսնյակը իր շողուն լույսով ժպտում էր բյուրավոր աստղերին, իսկ սրանք խմբերով, ուրախ պար էին բռնել նրա շուրջը: Սքանչելի մի պար էր աստղերի այս պարը: Պարում էին իսկական պարուհիների նման: Լուսնյակը հուզված և ուրախ՝ ասես լողում էր երջանկության մեջ:

*Ֆրանսերենից փոխադրեց՝*

**Գ. ՓԱՆՈՍՅԱՆ**



# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԹՈՐՈՍ ՌՈՍԼԻՆԻ, ՓՈՔՐԱՎՈՐԻ և ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ



1268 *թվականն էր։*

*Նոր միջօրեից շիկացել, ասես նարնջագույն բոցով հրդեհվում էր Հռոմկլան։*

*Մոտ երկու հարյուրից ավելի մավրիտանացի և թուրք շղթայակապ գերիներ մտրակի սպառնալիքի տակ քար ու շաղախ էին կրում հայ վարպետների համար։*

*Նորոգվում էին Կիլիկյան հայկական պետության արևելյան սահմանի վրա գտնվող, ավելի շատ որպես ամրոց ծառայող այդ մեծակալվածք վանքի խորտակված պարիսպները, որոնցից դուրս տարածվում էր Հայաստանի երբեմնի մասը կազմող Եդեսիայի կոմսությունը։*

*Նորոգվող պարսպից մոտ մի քարընկեց հեռու գտնվող վանքի գավթի շվաքում, վրձինը ձեռքին, կաղնեփայտի գրակալին բացված մագաղաթյա մի ստվար ձեռագրի վրա կռացել էր հազիվ քառասունն անց մեկը։ Նա բարձրահասակ էր, սպիտակ պարեգոտով, և կարմիր թավշյա գոտին ավելի էր ընդգծում նրա լայն թիկունքը, որի վրա փռվել էին երկար ու շեկ մազերը։ Սակայն ամենից գրավիչը նրա մաքուր սափրված դեմքի մեջ, ոսկեփայլ արևախանձն ու բաց երկնագույն աչքերն էին, որ այդ պահին լի էին թախծոտ անհանգստությամբ։ Երբեմն-երբեմն նա մի կողմ էր դնում վրձինը և աչքերը կկոցելով նայում էր նորոգվող պարսպի կողմը, որտեղ կուրացուցիչ արևի տակ աշխատում էին կիսամերկ գերիները։ Նրա ուշադրությունը հատկապես գրավում էր մի երիտասարդ, որը չնայած հսկիչի եռալեզու մտրակին, երբեմն կանգ էր առնում շարքի մեջ և հմայվածի պես նայում էր իր կողմը։ Ծարա՞վն էր տանջում այդ գերուն, թե՞ պարզապես գերությունից ձանձրացած ուզում էր մտրակների տակ մահ ընդունել։ Դեմքին սև էր ինչպես կուպրը, ուսերին թափված և մորուքին խառնված մազերը նման էին գզգզված պարանների, և բրոնզաթոր, մերկ մարմինն ասես օծված էր յուղով։*

*Չնայած դառը խոհեր առաջացնող այդ վայրենի արտաքինին, նա խղճում էր գերուն։ Խղճում էր, որ նա երիտասարդ է և արդեն ստրուկ։ Սակայն, երբ նրա հայացքն ընկնում էր պարսպից դենը տարածվող Եդեսիո հարազատ, գերված դաշտերին, խղճահարությունը չքանում էր մի պահ։ Չէ՞ որ այդ թշվառները նորոգում էին իրենց իսկ ձեռքով խորտակած պարիսպները։ Նա հիշում էր դեռ երկու շաբաթ առաջ Հռոմկլա այցելած հայոց թագավորին։ Տխուր և մտահոգ էր Լևոն Երրորդը, որ արքայորդի Հեթումի և իր թիկնապահների ուղեկցությամբ շրջում և ամրացնել էր տալիս հայոց սահմանները։ Մի՞թե կարելի էր հանգիստ նստել, երբ հարավ-արևելքից սահմանակից էին ավազակաբարո էյուբյաններին ու հյուսիսից Ռումի հսկայածավալ սուլթանությանը, երբ այնքան հեռու էին հարազատ Շահ-Արմենների հայկական պետությունն ու Հյուսիսային Հայաստանը։*

2

*— Օրն ի բարի՜ն,— հանկարծ լսեց նա և, դառը խոհերից սթափվելով, շուռ եկավ։*

*Նրա առջև կանգնած էր վանքի փոքրավորը, որ*

պղնձյա ծանր մատուցարանը զույգ ձեռքերով հենել էր կրծքին։

— Ա՜, դո՞ւ ես, Ծառուկ,— ժպտալով ասաց նա,— մի՞թե ճաշի ժամն է։

— Ժա՜մն է,— սև ու խոշոր աչքերը փայլեցնելով ասաց փոքրավորը։

Նա հազիվ տասներկու տարեկան լիներ, գանգուր մազեր ուներ, բոլորակ երես։ Կապույտ քաթանից կարված երկար շապիկը քսվում էր նրա բոբիկ ոտքերին։ Ծանր բեռը վայր դնելով, տղան ոտների ծայրերին ձգվելով նայեց բարձր գրակալի վրա բացված մագաղաթյա ձեռագրին։

— Էլի չեք ծաղկե՜լ...— տխուր ափսոսանքով ասաց նա։

— Իրա՛վ ես, Ծառուկ, չե՛ն ստացվում։ Ինձ թարմ մանուշակներ են պետք, իսկ վանքի շրջապատում մանուշակներ չկան։

— Ես կբերեմ,— ժպտալով ասաց տղան։

— Որտեղի՞ց,— ժպտաց և ծաղկողը։

— Ա՜յ,— հպարտորեն ասաց տղան ձեռքը մեկնելով դեպի պարսպից դուրս տարածվող Եղեսիո դաշտերը,— այնտեղ միշտ էլ մանուշակներ են լինում։

— Բայց այդ մանուշակները մերը չեն, Ծառո՛ւկ,— վայրկենապես տխրելով ասաց ծաղկողը,— այդ դաշտերը էյուբյաններինն են հիմա։

— Մե՜րն են, մե՜րն են եղել,— կրկնեց տղան,— այդպես էր ասում արքայորդի Հեթումը։

— Արքայորդին ճիշտ է հրամայել, Ծառո՛ւկ, բայց այժմ այնտեղ սարակինոսցի նետաձիգներն են շրջում. պետք չէ՛, ավելի լավ է ես երևակայությամբ ծաղկեմ։

— Բայց չէ՞ որ թագավորը դժգոհ կմնա, եթե ծաղիկները լավը չլինեն։

— Լավը կլինեն. և ապա, ես այս ավետարանը ծաղկում եմ արքայորդի Հեթումի համար. արքայորդին բարի սիրտ ունի։

Այդ պահին ծաղկողի հայացքը նորից հանդիպեց երիտասարդ գերու արնակալած աչքերին։ Հսկայական քարաբեկորը մերկ ուսին, ծանրությունից դողդողացող ծնկներով նա նորից կանգ էր առել շարքի մեջ և նայում էր գավթի կողմը։ Հանկարծ հսկիչը ահավոր կատաղությամբ վրա հասավ և սկսեց մտրակել գերուն։ Շղթաները շառաչում էին, շաչում էր մտրակը, իսկ երիտասարդ սարակինոսցին լուռ ու անմռունչ գալարվում, թավալվում էր փոշու մեջ։ Սոսկալի այդ տեսարանից սահմռկած գերիներն ու պատաշար վարպետները քարացել էին իրենց տեղերում։ Եվս մի քանի հարված, և գերին երևի կանշարժանար, բայց ծաղկողը նետվեց առաջ և իր սպառնական, բարձր հասակով կանգնեց մոլեգնած հսկիչի և ցավից գետինը ճանկռող գերու արանքում։

— Թո՛ղ, քեզ եմ ասում, թո՛ղ,— որոտաց համայրյա խելակորույս հսկիչը,— պիտի սպանե՛մ, պիտի սատկեցնե՛մ այս շանը...

— Նա արդեն մեռնում է, խիղճ ունեցիր, նա արդեն մեռնո՜ւմ է,— զայրույթից խեղդվող ձայնով աղաղակեց ծաղկողը։

— Մեռնո՜ւմ է,— քմծիծաղ տվեց հսկիչը,— իսկ դու գիտե՞ս, թե Մանսուրահում ովքե՞ր ընկան այս հերետիկոս շների ձեռքից... Թո՛ղ, ասում եմ, թո՛ղ, պիտի սատկեցնեմ...

— Ինչի՞ համար, հանուն ինչի՞։

— Ինչի՛ համար,— հեգնանքով կրկնեց հսկիչը,— նա թողեց շարքը և դեպի աղբյուրն էր գալիս...

— Երևի ծարավ է։

— Ծարա՜վ է։ Սրանք մեր արյունն են խմել, իսկ դու ծարավի մասի՜ն ես խոսում...

— Մենք էլ ենք վրեժխնդիր,— հանդարտ վրա բերեց ծաղկողը, բայց ընկածի վրա ձեռք չենք բարձրացնում։

— Հենց այդ պատճառով էլ պիտի պատժվե՛ք, հենց այդ պատճառով էլ պիտի կորցնե՛ք, ինչպես որ կորցրել եք,— ձեռքը դեպի Եղեսիո դաշտերը պարզելով վրա բերեց հսկիչը,— դե՛, հիմա պաշտպանի՜ր, խղճա՛ այս շանը, իսկ վաղը նա քեզ նույն օրին կգցի...

Ծաղկողը խայթող հայացքով նայեց հսկիչի չարախինդ աչքերի մեջ և, առանց պատասխան տալու, կռացավ փոշիներում բերանքսիվայր ընկած գերու վրա։

— Ար-քու-նի նը-կա-րի՜չ,— քթի տակ հեգնանքով վանկարկեց հսկիչը և, ձեռքը թափ տալով, ուղղվեց դեպի պարիսպը, որտեղ՝ նրան տեսնելուն պես, իրար անցավ մինչ այդ սարսափից քարացած գերիների շարքը։

Ոտքի հանելով գերուն, որն այժմ խուլ տնքում էր, ծաղկողը, մեծ դժվարությամբ հասցրեց գավիթ և սառնորակ ջրով լի թասը մոտեցրեց նրա արյունոտված շրթունքներին։ Սարակինոսցին համարյա մի շնչով դատարկեց թասը, հետո խմեց երկրորդը, երրորդը։

— Շա՜տ ծարավ էիր,— ասաց ծաղկողը, երբ սարակինոսցին խորը շունչ քաշեց։

— Ծարավ էի... Բայց դու ալլահի մարդ ես, տեր ի՜մ, ես այդ զգում էի քո դեմքից... Դու քեշի՞շ ես[1]։

— Ո՛չ,— ժպտաց ծաղկողը,— ես արտագրում եմ և ծաղկազարդում։

Եվ նա ձեռքը պարզեց դեպի գրակալը։

Գերին, մի պահ չռված աչքերով նայում էր մագաղաթյա գրչագրին, հետո հանկարծ զույգ ձեռքով զարկեց իր գլխին.

— Ալլահ-աքբա՜ր[2],— մեղավորի պես հեծծեց նա,— թո՛ղ որ մարգարեն անիծե ինձ, թո՛ղ որ

[1] Քահանա

[2] Մեծն աստված կամ՝ աստված իմ։



Արուբարը էլ հավիտյան չտեսնի իր զավակներին, իր սիրելի Դամիենը...

Ծաղկողը զարմացած նայում էր սարակինոսցուն, որ այժմ չոքելով գլուխն առել էր ձեռքերի մեջ։

— Քեզ ի՞նչ պատահեց,— կարեկցանքով հարցրեց նա։

— Մի՛ հարցներ, տեր իմ, մի՛ հարցներ, — ձեռքերի մեջ առած գլուխն օրորելով, պատասխանեց սարակինոսցին,—ես հենց այդպես էլ գիտեի, ես հենց այդպես էլ գիտեի՜... Դուք ինձ իզուր օգնեցիք, տեր իմ, իզո՜ւր...

— Ինչպես թե իզուր,—զարմացավ ծաղկողը։

— Չէ՞ որ ես ինքս էլ այրել եմ, պատառոտել, թրով կտոր-կտոր արել...

— Ի՞նչը։

— Այսպիսի գրքե՜ր, տեր իմ, այսպիսի գրքե՜ր...

Տիրեց խոր լռություն։

— Ռոսլի՜ն,—հանկարծ պարսպի կողմից լսվեց հսկիչի դժգոհ ձայնը,—բաց թող այդ շանը, բաց թող, բավակա՜ն է...

Սպառնալի ձայնից գերին ցնցվեց ու ոտքի ելավ։ Նա զգաց, որ խոսքն իրեն է վերաբերում։ Սկզբում նա սառն ու անտարբեր նայեց իր շղթայակապ ընկերների կողմը, ապա՝ մի անկեղծ նվիրվածությամբ ծաղկողի թախծալի աչքերի մեջ և, հանկարծ անսպասելիորեն ծունկի գալով, վերջինիս պարեգոտի փեշը սեղմեց շրթունքներին։

— Տեր իմ, ների՜ր, ների՜ր դամիենցի Արուբարին,— աղերսում էր նա արցունքախեղդ ձայնով,—ների՜ր, տեր իմ,՝ ների՜ր...

Ծաղկողը լուռ էր. նա թախծալի հայացքով նայում էր իր դեմ չոքածին, փոշոտ ու խռիվ մազերի մեջ ջղաձգվող նրա սև, կոշտացած մատներին, որոնք և՛ արմավենիներ էին անեցրել, և՛... վայրենաբար պատառոտել...

Ծաղկողը թեև արդեն աչքից կորցրել էր գերու ձանոթ կերպարանքը, սակայն այդ անսպասելի խոստովանությունից ալեկոծված հոգով դեռ երկար ժամանակ նայում էր կարմիր վերջալույսից հրդեհվող Եդեսիո դաշտերին։ Բայց երբ նա իրիկնային քամուց սթափվելով շուռ եկավ և, արմունկները հենելով գրակալի եզրին, նայեց մագաղաթյա գրչագրի անավարտ էջին՝ մոռացավ գերուն։

Երկրորդ օրն էր, այո, երկրորդ օրը, ինչ դարչնագույն գեղեցիկ նոտրագրով լցված էջի լուսանցքները մնում էին այդպես դատարկ, չծաղկած։ Ծաղկողի սիրտը ճմլվեց։ Նա փակեց աչքերը չտեսնելու համար այդ դատարկ լուսանցքները, ձեռքերով փակեց ականջները՝ չլսելու համար շղթաների շառաչն, ու այդպես, քարացած, խոհերը նրան հեռոգնեռ կտրեցին աշխարհից ու տարան հեռավոր անցյալը...

3

Սկզբում, նախքան տառաճանաչ լինելը, նա մագաղաթ էր հղկում։ Դա այնքան էլ դյուրին բան չէր. կիսով չափ դաբաղված գառան կամ ոչխարի մորթին ոսկրե հերունով այնքան պիտի մաքրվեր ու հղկվեր, մինչև որ դառնար ողորկ ու լուսափայլ, ինչպես լուսնի տակ շողացող մարմարը։ Այնուհետև, խոնավ գրչատանը, երբ նա հին ու անընթեռնելի մագաղաթներ էր քերում, մագաղաթների պես գունատ ու լռակյաց գրիչները նրան տառաճանաչ դարձրին։ Այդ օրերին էլ թանկ էր մագաղաթը, թանկ, ինչպես հիմա։ Ո՞վ կտար նրան մագաղաթի մի կտոր, երբ նորից գրելու համար մգլած, անընթեռնելի մագաղաթներն էին քերում։ Ու մի օր, երբ բոլորից ծածուկ, մագաղաթյա մի անպետք պատառիկի վրա նա ծաղկազարդելով գրեց իր անունը՝ «ԹՈՐՈՍ», անսպասելի կերպով գրչատուն մտավ ինքը Կյուրակոս գրիչը։ Կյուրակոս գրիչը չբարկացավ նրա վրա. մագաղաթի պատառիկը երդիկից ներս ընկած լույսի տակ բռնելով, նա երկար դիտեց այդ «ԹՈՐՈՍ»-ը և ծերունական դողդոջ ձայնով ասաց.

— Դու էլ չես հերունի, Թորոսի՛կ, եռ այսու դու կգրես ու կծաղկես։

Եվ այդպես եղավ. ու այնուհետև նա Կյուրակոս գրչի աշակերտն էր, ամենարնդունակ, արագագիր, անսխալ գրիչն ու ծաղկողը։ Սակայն դրանք տքնության ու սովորելու տարիներ էին, իսկ երբ Կյուրակոս գրիչը մեռավ, էլ ուրիշը չկար, որից նա սովորեր, թեև պատանի էր, հազիվ աղվամազ մորուքով, սակայն էլ ուրիշը չկար, որից նա սովորեր։ Իսկ այն, ինչ նա գիտեր, քիչ էր նրա համար, նրա փնտրող, երազող հոգու համար։ Ու նա՝ սկսեց սովորել ինքն-իրենից, իր հոգուց եկող, իր սրտում ու հոգին փոթորկող երազանքներից, իր շուրջն ալեկոծվող, սակս իր հետ խո-

*սող կենդանի բնությունից, ծառից, ծաղկից, թռչնից ու թիթեռից և երկնքի լազուրը գոտևորող յոթներանգ ծիածանից։ Մինչ այդ նա ծաղկում էր ինչպես իր ուսուցիչը, ինչպես մյուս անվանի գրիչները, ծաղկում էր սառն ու անշունչ, թեև օրինավոր, սակայն անկենդան։ Բայց այժմ նրա վրձնած ծաղիկներն ասես բուրալի էին, վարդագույն ցողը վրան։ Եվ ահա նրա հռչակը Կիլիկյան Հայաստանից հասավ մինչև հարազատ Շահ-Արմենների սահմանները, բարձրացավ Անի, այնուհետև տարածվելով ծովերով ու ցամաքներով մինչև Ֆրանկների աշխարհը։ Եվ այնքան մեծ էր այդ համբավը, և իր վրձնով նա այնպես տարբերվեց մյուս ծաղկողներից, որ թվում էր, թե նա միակն էր ամբողջ աշխարհում, և ֆրանկները նրան կոչեցին սոսկ Ռոզլին[1], Ռոսլին Հռոմկլայեցի, և այդպես էլ մնաց։*

*Սակայն... բավական չէր միայն համբավը. ապրուստի համար պատվերներ էին հարկավոր։ Նա մերթ լինում էր արքայանիստ Սսում, մերթ Վահկա ամրոցում ու Լամբրոնում, մերթ Անամուռում ու Տարսոնում, մերթ Կոռիկոս բերդաքաղաքում ու Այաս նավահանգստում, ուր նրա հոգնած աչքերը այնպես հանգստացնում էին Միջերկրականի կապույտ ջրերը։*

*Բայց չհանգստացավ նրա հոգին։ Անվերջանալի թափառումների ժամանակ նա խորը վշտով համակվեց, տեսնելով, թե գրի ու լույսի ինչպիսի՛ ծարավով էր տանջվում հայրենի երկիրը դրախտավայր դարձնող ռազմունակ ռամիկը։ Օ՜, ինչքան կցանկանար գրել ու ծաղկել այդ երգասեր ու աշխատասեր ռամկի համար։ Սակայն դա երազանք էր միայն... Թա՜նկ էր մագաղաթը և ռամկի համար հույժ անմատչելի։ Օ՜, ինչքան կցանկանար, որ ինքը հարուստ լիներ, բեռներով մագաղաթ ունենար և գրեր, ծաղկեր ու նվիրեր ռամիկ ժողովրդին։ Սիրտն ու հոգին ռամկական խրճիթներում, արևախանձ դաշտերում ու ձկնորսական հյուղակներում, նա գրում ու ծաղկում էր ամրոցների, վանքերի ու իշխանական պալատների համար...*

*Եվ ծաղկողը սկսեց մեկ-մեկ հիշել իր արտագրած ու ծաղկազարդած բազմաթիվ մատյանները։ Ամենից շքեղը 1262 թվականի ձեռագիրը եղավ։ Այդ նա արտագրում ու ծաղկում էր Լևոն Երրորդ թագավորի պատվերով։ Հիվանդ էր, տանջվում էր տենդից, իսկ իրեն շտապեցնո՜ւմ էին։ Ու երբ գահի առջև գլխատարած Թորոս Ռոսլինը մատուցում էր իր բազում տառապանքների գնով ավարտված մատյանը, ու Լևոն Երրորդը արքունի նկարչի տիտղոսն էր շնորհում նրան, տենդից դժժում էին ականջները, աչքերն այրվում էին, և դողդոջ ձեռքերի մեջ արքային պարզած մատյանը ապառաժի ծանրություն ուներ...*

4

*Նորից ծագեց արշալույսը Հռոմկլայի վրա, և խավարի մեջ թաղված Եդեսիո դաշտերը նորից շողշողացին։ Հետո եկավ տոթ միջօրեն, և միջօրեի հետ փոքրիկ Ծառուկը։*

*Տղան այդ օրը անօրինակ զվարթ էր երևում. նրա բոլորակ երեսը շտապելուց վարդագունել էր, և ոսկեգույն խոպոպները կպել էին քրտնած ճակատին։ Ինչպես երևում էր, նա անհամբերությամբ էր սպասել ճաշի ժամին, որպեսզի հնարավորություն ունենա տեսնելու ծաղկազարդվող գրչագիրը։*

*Տեսնելով նրան, չգիտես ինչու, Ռոսլինը ճիշտ նույն զգացմունքն ունեցավ, երբ տարիներ առաջ Կյուրակոս գրիչը ձեռքն առավ մագաղաթյա այն պատառիկը, որի վրա ինքը ծաղկազրել էր իր առաջին «Թռչունը»։ Եվ մինչ նա վաղուց մոռացված այդ զգացմունքով էր տարված, Ծառուկը՝*



Նկ.՝ Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

[1] Ռոզ—լատ. ծաղիկ բառից՝ ծաղկող, ծաղկազարդող։

հևիհև ողջունելով, վայր դրեց ճաշի պղնձյա մատուցարանը և, ոտների ծայրերին ձգվելով՝ նայեց գրակալի վրա բացված գրչագրին։

Չնայած իր պատկառելի հասակին ու համբավին, Ռոսլինը սրտի անօրինակ տրոփյունով նայում էր իր մանուկ բարեկամին, սպասելով նրա «էլի չեք ծաղկել, վարպետ»-ին։ Սակայն, հակառակ նրա սպասածին, փոքրիկը հուսախաբություն և թախիծ արտահայտող սառն աչքերով մի պահ նայեց դատարկ լուսանցքներին, հետո, Ռոսլինի խուսափող աչքերի մեջ և լուռ հեռացավ։

Ռոսլինի սիրտը ճմլվեց. նա ուզեց ետ կանչել փոքրիկին, բացատրել նրան իր հոգում իջած անտանելի ու անհասկանալի ծանրության մասին, ասել նրան, որ ողջ գիշերը չի քնել, որ մտորել է այդ դատարկ լուսանցքների համար, բայց ձայնը խեղդվեց կոկորդում և, անասելի մի հոգնություն զգալով, հենվեց գավթի սյանը։

Երկար ժամանակ նա այդպես կիսախուփ աչքերով լսում էր պարսպի կողմից եկող շղթաների սովորական շառաչյունն ու հսկիչի մերթ ընդ մերթ հնչող սպառնագին ազդակները։

Հանկարծ մի անօրինակ լռություն տիրեց. պարսպի տակ ասես կանգ առավ ամեն մի շարժում։ Այդ լռությունից զարմացած Ռոսլինը բացեց կիսախուփ աչքերն ու, ամբողջ հասակով ձգվելով, նայեց պարսպի կողմը։ Հիրավի, այնտեղ ինչ-որ անօրինակ բան էր կատարվել։ Նա արագորեն դուրս թռավ գավթից և մի քանի վայրկյան հետո արդեն պարսպի վրա էր։

— Ի՞նչ է պատահել,— հևալով, հարցրեց նա վարպետներից մեկին։

— Մի՞թե չեք տեսնում,— մատը դեպի հանդիպակաց ծաղկաշատ բլուրը պարզելով, ասաց վերջինս։

— Փոքրամո՞րն է, փոքրամո՞րը,— ավելացրեց մեկ ուրիշը, երբ Ռոսլինը ճգնում էր բլուրի ուղղությամբ ինչ-որ մի բան նշմարել,— ո՞ւր է վազում, ի՞նչ է ուզում։

Ռոսլինը շանթահարվեց. նա դեռ չէր նկատել բլրալանջով վազող կապույտ պարեգոտավոր փոքրիկին, բայց ամեն ինչ արդեն պարզ էր։ Ձեռքը հևացող կրծքին, նա օգնություն հայցողի պես անհանգստորեն պտտվեց տեղում, ուզեց ինչ-որ բան ասել և ցավից այնպես սեղմեց բռունցքները, որ ճկույթի երկարացրած եղունգը ասես թափ անցավ ափի մեջ։

— Կանգ առավ, տեսնո՞ւմ եք, կանգ առավ,— աղաղակեց մեկը։

— Բայց այդ ի՞նչ է անում, ինչո՞ւ է դես ու դեն նետվում...

— Ասես ծաղիկ է փնջում։

— Ճշմարիտ որ. բայց ա՜յ քեզ խենթուկ, ա՜յ թե ծաղիկ փնջելու տեղ է գտել։

Մեկը նույնիսկ ծիծաղեց։

Սակայն այդ ծիծաղը խլացավ ընդհանուր սարսափի մեջ։ Հանկարծ բլրի հետևից երևացին երեք նիզակավոր սարակինոսցի հեծյալներ, որոնցից մեկը, ձգվելով ասպանդակների վրա, լարեց իր աղեղը...

... Քիչ հետո տագնապալի ղողանջում էին Հռոմկլայի զանգերը և հևիհև, փարաջաների փեշերը բռնած, ծերունի վանահոր գլխավորությամբ դեպի պարիսպն էին շտապում վանականներն ու փոքրիկ Ծառուկի ընկերները։



Վշտից արձանացած Ռոսլինը լսելով պարիսպն ի վեր ելնող վանականների հևքն ու կցկտուր աղոթքները, շուռ եկավ ըստ պատշաճի խոնարհություն անելու։ Բայց հազիվ էր նա արցունքով լի աչքերով նայել պարիսպն ի վար, երբ այնտեղ, գերիների շարքի մեջ տեսավ սարակինոսցի գերուն, որ՝ ձեռքերը կրծքին խաչած, մեղավորի պես նայում էր իր կողմը։

«Տեսա՞ք, Արուքարք, տեսա՞ք, թե ինչ արեցին նրանք,— ասես ասում էին Ռոսլինի թախծալի աչքերը,— ես քեզ փրկեցի, բայց նրանք սպանեցի՜ն մեր Ծառուկին»...

Գերին հասկացավ նրան և խոնարհեց գլուխը։ Պարանների նմանող նրա երկար ու ոլորուն մազերը թափվեցին ներս ընկած կրծքի և ժանգոտ շղթաների վրա...

5

Վաղ լուսաբացին Ռոսլինը՝ գրչագիրն ու ներկապնակների տուփը թևի տակ, մտամոլոր և անքնությունից ուռած աչքերով դեպի գավիթ էր գնում։ Գավիթը լի էր ամբոխով։ Պարսպաշար վարպետներն ու վանքապետական շինականները լուռ, խոնարհ ողջույնով ճամփա տվին նրան։

Այնտեղ, կաղնեփայտի գրակալի կողքին, հենց այն մաշված ու անընթեռնելի շիրմաքարին, որի վրա նա շարում էր իր գույնզգույն ու պայծառ ներկապնակները, ձեռքերը կրծքին խաչած և խաչված ձեռքերի վրա՝ արյունոտված մանուշակների մի փունջ, պառկած էր փոքրիկ Ծառուկը։

Երբ անցան անմխիթար հեկեկանքի առաջին վայրկյանները, երբ ծնկների վրա ընկած Ռոսլինը բարձրացրեց գլուխն ու մոտիկ կանգնածների օգնությամբ ոտքի ելավ, առաջին հարցը, որ նա տվեց, այն էր, թե ով, ինչպես, և երբ են բերել Ծառուկին։

— Գիշերով,— ատամների արանքից պատասխանեց հսկիչը,— գիշերով։

— Իսկ ո՞վ է բերել... — երախտապարտ ղող-

դող ձայնով ու դեռևս արցունքները կուլ տալով՝ հարցրեց Ռոսլինը։

Հսկիչը զայրալի մի շարժումով մտրակը պարզեց առաջ։ Եվ այդ պահին միայն Ռոսլինը տեսավ Աբուբաքրին, որի մերկ ուսը ամբողջովին ներկված էր արյունով։

— Բայց նա անպատիժ չի մնա,—թունալի վրա բերեց հսկիչը, երբ Ռոսլինը զարմանքից լայնացած աչքերով նայում էր սարակինոսցուն։ — Անպատիժ չի կարող մնալ այն գերին, որ խախտում է սահմանը։

— Բայց նա... սրա՞ն է բերել,—ափերն առաջ պարզելով, խոսակցության անտարբեր, ասես անուշ քնով տարված փոքրիկին ցույց տալով, հանկարծ պոռթկաց Ռոսլինը,—նա արել է այն, ինչ դուք զլացաք անելու. և դեռ պիտի պատժվի՞... Երդվում եմ, որ այսօր իսկ Սիս կերթամ և ամեն ինչ կպատմեմ արքային...

— Իսկ ձեր կարծիքով ես իրավունք չունե՞մ տերունական կարգ ու կանոնը պաշտպանելու,—հազիվ զսպելով զայրույթը հարցրեց հսկիչը։

— Ունեք, սակայն խղճո՞վ։

— Լավ, Ռոսլին, լավ, բավական է,—ատամների արանքից ասաց հսկիչը, զգալով իր աննախանձելի վիճակը,—իսկ ես կարո՞ղ եմ մի հարց տալ այս... սարակինոսցուն։ Բայց ես չգիտեմ նրանց լեզուն։ Խնդրում եմ հարցնեք, թե ինչու նա վերադարձավ, երբ կարող էր չվերադառնալ։ Դա ինձ շատ է զարմացնում։

Ռոսլինը սիրալիր ու երախտագիտությամբ լի աչքերով նայեց Աբուբաքրին ու կրկնեց հսկիչի հարցը։

Սարակինոսցին իր շղթայակապ ձեռքը պարզեց դեպի Թորոս Ռոսլինը։

— Մեն շաաք, անթա[1],—ասաց նա դողդոջ ձայնով,—դուք ինձ օգնեցիք... Իսկ ես արժանի չէի... Ես տեսա, որ տանջվում էիք այս փոքրիկի համար։

— Ի՞նչ ասաց,—հարցրեց հսկիչը փորձելով ժպտալ։

Ռոսլինը չպատասխանեց։ Բայց նա հասկացավ։

* * *

Փոքրիկ Ծառուկին հողին հանձնելուց հետո երեք օր Ռոսլինը չէր հեռանում նրա շիրմից և չորրորդ օրը միայն հիշեց գրչագիրը։ Եվ հենց նույն երեկոյան, երբ արեգակը իր վերջին շողերն էր հավաքում Եդեսիո գերված դաշտերից և գավթի հին շիրմաքարի վրա արդեն թառամել էին արյունոտված մանուշակները, գրչագրի լուսանցքները շողշողում էին հեքիաթային գույներով։

Այնտեղ, ասես թարմ ու բուրալի մանուշակների հյուսվածքի միջից, որ եզերում էին մագաղաթյա լուսափայլ լուսանցքները, ոսկյա աղեղը ձեռքին, բոլորադեմ ու ժպտուն մի պատանի էր նայում. Նա կարմիր մաշիկներ ուներ ու կապույտ պարեգոտ, և նրա ոսկեգանգուր գլուխը եզերված էր ոսկեփայլ լուսապսակով։

Եվ ոչ-ոք Հռոմկլայի վանականներից ու փոքրավորներից, և նույնիսկ արքայորդի Հեթումը չիմացավ, որ այդ երջանկաժպիտ տղան փոքրիկ-փոքրավոր Ծառուկն էր, որ զոհել էր իր կյանքը, որպեսզի ծաղկի գրչագիրը հայոց...

[1] Ձեզ համար, ձեզ (արաբ.)։

## ՍՊՈՐՏԱՅԻՆ ԵՐԳ

Խոսք՝ ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Երաժշտություն՝ ՍՏԵՓԱՆ ՆԱՂԴԵԱՆԻ

Հնչի՛ր, մեր երգ հաղթական,
Շողա՛, պայծառ արև,
Փառք տանք սպորտին բյուր անգամ
Ու ջերմ ողջույն, բարև:

Ջա՜ն, գեղեցկության,
Խիզախման դու երգ,
Մեր սպորտի ճամփան
Փառքով զարդարենք:

Կան շատ ձևեր սպորտային,
Մեկը մեկից կայտառ,
Մարզանք սիրող պատանին
Աշխույժ է ու պայծառ:

Մարզենք, կոփենք կամքը մեր,
Լինենք առողջ, տոկուն,
Քայլենք առաջ՝ դեպի վեր
Ճամփաներով ծաղկուն:

Ջա՜ն, գեղեցկության,
Խիզախման դու երգ,
Մեր սպորտի ճամփան
Փառքով զարդարենք:

Նոտան տե՛ս 28-րդ էջում

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

## ԹԻԹԵՌՆԻԿԸ ՀՈՒՐ Է ՓՆՏՐՈՒՄ

Թիթեռնիկը թռչկոտում է,
Հուր է փնտրում։
Հուրհրատող մի կակաչ է
Դաշտում ընտրում։
Ծաղկին կանգնում,
Զարմանում է թիթեռնիկը,
Այս ի՞նչ հուր է,
Որ չի այրում իր թևիկը։
Ու թռչում է, թռչում, թռչու՜մ,
Նա կրակ է փնտրում կրկին,
Բայց արի տես՝ ոչ մի ծաղիկ
Չի հրկիզում թիթեռնիկին։



## ՔԱՐՏԵԶԻ ՄՈՏ

Քարտեզի վրա
Ի՜նչքա՜ն գետեր կան։
Ա՜խ, գոնե մեկը
Լիներ... իսկական։
Մոտիկ ծորակում
Գետակն է երգում,
Կարծես կանչում է՝
Զո՜վ է իմ գրկում,
Դե շուտ, մանուկնե՜ր,
Եկեք լողացե՜ք,
Ամառվա շոգին
Մի լավ հովացեք։
Ու մանուկները
Վազում են ծորակ,
Ուրախ լողանում
Ջրում սառնորակ։

## ՔԱՋ ՈՒԼԻԿԸ

Չալիկ-մալիկ,
Իմ լա՜վ բալիկ,
Սիրու՜ն ուլիկ,
Չալպտուրիկ,
Քեզ նվիրեմ
Մի մե՜ծ պուլիկ։
Երբ մեծանաս՝
Լցրու կաթով,
Որ քեզ գովեն,
Ցույց տան մատով,
Այս ուլիկը,
Լավ բալիկը,
Կաթ է տալիս
Յոթ կովի չափ,
Համարյա թե
Մի ծովի չափ։
Չալիկ-մալիկ,
Իմ լա՜վ բալիկ,
Սիրու՜ն, նախշու՜ն,
Չալպտուրիկ։
Ծաղկած սարը դու բարձրացիր,
Կանաչներում կուշտ արածիր,
Որ մեծանաս, կոտոշ հանես,
Թե գայլը գա՝ տաս, սպանես։
Գնա, ուլիկ, բարձր սարը,
Խոտն անուշ է, ջուրը՝ սառը։



## ՃՈՒՏԻԿԸ

Փոքրիկ ճուտիկ,
Աղվամազիկ,
Մի՛ վախենա,
Արագ վազի՛ր։

Ջու՜-ջու՜, ջու՜-ջու՜,
Արի՛, արի՛,
Ու՞ր ես մենակ
Կանգնել քարին։

Թե վերք ունես՝
Կանչեմ տատին,
Որ քո վերքը
Նա փաթաթի։

Ջու՜-ջու՜, ջու՜-ջու՜
Արի՛, արի՛,
Իմ տատիկը
Շատ է բարի։



Նկ. Վ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



# ԱՄՊԵՐԻ ԵՐԿՐՈՒՄ

ՖԵՐԵՆՑ ՄՈՐԱ
(Հունգար գրող)

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Ամպերի երկրում կյանքումս միայն մեկ անգամ եմ եղել: Այն օրը, երբ հայրս առաջին անգամ զայրացավ ինձ վրա: Իսկ զայրացավ, երբ ինձ հարց տվեց.

— Ո՞վ է ջարդել պապի բաժակը:

Ես դեռ փոքր էի և չէի հասկանում, որ ով մեղք է գործել, պետք է խոստովանի, այդպես է աշխարհի կարգը: Իսկ ես փոխանակ խոստովանելու, գլուխս կախ գցեցի և ուսերս վեր քաշեցի:

— Ի՞նչ իմանամ: Ինքն իրեն է ջարդվել:

Հայրս տխուր նայեց ինձ և ավելի շուտ վշտացած, քան բարկացած, ասաց.

— Լավ, տղաս, մի՛ վախենա, էլ քեզ չեմ հարցուփորձի: Դու և՛ վախկոտ ես, և՛ հաստակող, դու ինձ համար տղա չես, ցավ ու պատիժ ես:— Եվ շուռ գալով, իր հետևից դուռը շրխկացրեց:

Ես հնդկահավի պես կատաղած փքվեցի՝

— Մե՛կ է, բաժակը ես չե՛մ ջարդել:—Ոտքս մոլեգնորեն խփեցի հատակին և վազեցի այգի՝ դարդըս լացելու:

Պառկելով գետնին, հայացքս ուղղեցի երկինք, որտեղ լողում էին չափազանց արտառոց տեսք ունեցող թուխպեր: Դրանց մեջ կար մի ամպ, որը ճիշտ և ճիշտ հովատակի էր նման, սլացիկ էր, արծաթաբաշ, գլուխը՝ նրբակերտ:

«Էհ՛, լավ կլիներ դրա մեջքին թռչել,— մտածեցի ես,—ու սլանայի առանց կանգ առնելու, մինչև որ տեսողությունիցս ծածկվեր մեր օջախի ծուխը: Ա՛յ թե հայրս լաց կլիներ, հա՞»:

Այդպես էի մտորում, երբ հանկարծ թիկունքիցս ուրախ խրխինջ լսեցի:

— Ի՞նչ կհրամայես, իմ բարի տեր, սուրա՞նք, թե՞ ճախրենք: Դեպի արևե՞լք, թե՞ արևմուտք: Ուզում ես երկաթե թռչնի պե՞ս սլանամ, թե՞ անհեղլի պտտահողմի:

Ես ետ նայեցի: Ա՛յ քեզ բա՜ն, իմ թիկունքում գետինն էր փորփրում ամպե մի հովատակ: Նա սլացիկ էր, արծաթաբաշ, գլուխը՝ նրբակերտ: Դեռ չէի հասցրել հիացմունքս արտահայտել, երբ հովատակի մեջքին ոսկեջրած մի թամբ հայտնվեց: Ես նույնիսկ խոհանոց չվազեցի՝ ճամփի պաշար վերցնելու: Երբ դրա անհրաժեշտությունն զգացի, արդեն ուշ էր, մենք ճոճվում էինք ամպերի ինչ-որ կախարդական աշխարհում: Ես ցած նայեցի, և երկիրն ինձ բլիթի չափ թվաց: Ա՛յ թե սկսեցի թնկթնկալ, երբ չկարողացա մեր տունը նշմարել...

— Իսկ դու հիմա դրա մասին մի՛ մտածիր,— վրնջաց ամպե հովատակը:—Ավելի լավ կլինի նայիս այս կողմ՝ փերիների դղյակին:

Այդ դղյակը երկրից հաճախ էի տեսել, սակայն երբեք չէի կարծում, թե դա այդքան հիասքանչ է: Շեմքը բյուրեղապակուց էր, պատերը ծիածանի պես շափաղ էին տալիս, ոսկեզօծ սանիքը ցոլում-ցոլցըլում էր:

— Ա՛յ իմ ձիուկ, արի թեքվենք դեպի այս հեքիաթային տունը: Մեկ էլ տեսար՝ փերիները մեզ նշակարկանդակով հյուրասիրեցին:

Բայց դեռ խոսքը բերանումս էր, երբ դղյակը չքացավ, իսկի իզն ու թոզն էլ չմնաց: Քամին թռցրեց դղյակը ինչպես թեթև մի փետուր և փոխարենը քշեց-բերեց գառների մի հոտ: Գանգրամազ, ձյունաճերմակ գառնուկները երկար շարքեր կազմած՝ արածում էին երկնային մարգագետնում:

— Ա՜խ, ո՜նց եմ ուզում դրանց շոյել։ — Եվ ես ձեռքս պարզեցի։

Գառներն իսկույն ցրիվ եկան ու ցնդեցին, կարծես ծուխ կամ գոլորշի լինեին։

— Ես ավելի շատ սիրում եմ այն գառնուկներին, որ ոստոստում են գետնի վրա, խոտերի մեջ, — ասացի վշտացած։

— Ոչի՜նչ, իմ փոքրիկ տեր, — մխիթարեց ամպե հովատակը, — ավելի լավ կլինի մեր առջևից անվի պես գլորվող պստլիկ այս նապաստակի ականջը բռնես։

Բռնել, անշուշտ կարելի է։ Չէ՞ որ մեծ, թավամազ նապաստակը հողմաղացի թևերի չափ ականջներ է ունենում։ Բայց հազիվ էի ձեռքս երկարել, երբ նապաստակն անմիջապես թաքնվեց ինչ-որ ծառի ճյուղերի մեջ։ Դե՜, հիմա արի ու գտիր նրան։

— Մի տես է՜, — զարմացա ես։ — Մեզ մոտ նապաստակները ծառ չեն մագլցում։

— Այո՛, իմ փոքրիկ տեր, բայց չէ՞ որ ձեզ մոտ ամպե նապաստակներ չկան։ Մի՞թե ձեր կողմերում այս ամպե ծառի նման ծառեր կան։

Իրոք, երկրում այդպիսի վիթխարի ծառ չես գտնի։ Այդ ծառի սաղարթը երկնքի կեսն էր բռնել, բայց ամենազարմանալին այն էր, որ նրա բունը, նրա հզոր բունը խոտի ցողունի պես ճկվում էր ու ճոճվում, թեև ամենևին քամի չէր փչում։ Ծառի ճյուղերին շողում-շողշողում էին ադամանդե խնձորներ, որոնք կարկտի պես շխկում-շխկշխկում էին։

— Ընդ՛, հորս համար խնձոր կպոկեմ, — և ես ձեռքս պարզեցի, բայց ապարդյուն, ծառը չքացավ, կարծես, բնավ էլ գոյություն չէր ունեցել։

Ես սկսեցի հոնգուր-հոնգուր լաց լինել։

— Ա՛յ իմ փոքրիկ հովատակ, այս ամպե աշխարհը լավ չէ, այստեղ ոչ մի բան իր տեղում չի մնում, նույնիսկ ուտելիքը բերանիդ առաջից փախչում է։

— Սպասիր, հիմա այնպիսի բան ցույց տամ, որ չփախչի։

Ամպե հովատակը թափով ոստնեց, և մենք իսկույն հայտնվեցինք մի սարսափելի առյուծի մոտ, որը մեզ տեսնելուն պես երախը բացեց։ Նրա մազերը բիզ-բիզ էին կանգնել, և երբ ես տեսա նրան, մարմնովս մի դող անցավ։ Իսկ գիտե՞ք, թե ինչ եղավ, երբ այդ ահռելի առյուծը մռնչաց.

— Ո՞վ է կոտրել պապի բաժակը։

Նույնիսկ ամպե հովատակը վախեցավ այդ մռընչյունից և, ընդոստ վեր թռչելով, ինձ ցած գցեց։ Ես առանց կանգ առնելու այնքան գլորվեցի, մինչև որ գետնին շրմփացի։

Եվ հանկարծ աչքերս բաց արի ու երկինք նայեցի։ Այնտեղ ո՛չ ամպե առյուծ կար, ո՛չ էլ ամպե հովատակ, պայծառ երկնքում արևն էր ուրախ ծիծաղում։

«Այս ամենը երազ էր, — մտածեցի ես։ — Երազը՝ երազ, բայց ինչո՞ւ է, ախր, ուսս ցավում»։

Այս պատմությունն ավարտվեց նրանով, որ շորերիս փոշին թափ տվի ու, թեև աղավնիներն սկսեցին գլխիս պտույտ գալով ձեռ առնել ինձ, ուս ու փուս պատշգամբ բարձրացա և ասացի.

— Հայրի՛կ, ես եմ ջարդել պապի բաժակը։

Երբ մեղր քսած մեծ հացի կտորը խժռելով՝ դարձյալ այգի իջա, երկնքում վերստին ամպե մի հովատակ էր լողում։ Բայց այլևս ո՛չ հեծնել էի ուզում, ո՛չ էլ քշել։

*Ռուս. թարգմ. Գ. ՖԵՐԵՇԵԹՅԱՆ*



# ՁԿՆՈՐՍՆԵՐԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Տղաները ափ հասան,
Որ գետակում ձուկ որսան.
Շուտ կախեցին կարթերը,
Ամրացրին որդերը։
— Լավ կլինի, եթե մենք
Մի մեծ, հսկա կետ բռնենք...
— Ա՛յ, այսպիսի մեծության...
— Ա՛յ, այսպիսի հաստության...
Ջուրն է փայլում արևից,
Ջուրն է խաղում մեղմ հովից։
Օդում ճողերն են դողում,
Բայց գետում կետ չի լողում։
— Սա հո ծով չի՞, գետ է, գե՛տ.
Այստեղ չկա ոչ մի կետ։
— Երանի թե հիմա մենք
Լոքո բռնենք՝ տուն տանենք։
— Ա՛յ, այսպիսի մեծությա՛ն...
— Ա՛յ, այսպիսի հաստության...
Ջուրն է փայլում արևից,
Ջուրն է խաղում մեղմ հովից.
Օդում թելերն են դողում,
Գետում լոքո չի լողում։
— Չէ՛, անպետք են կարթերը...
— Չէ՛, նիհար են որդերը....
Դեմի ափից մի ծերուկ
Ասաց.— Տղե՛րք, խե՛նթ եք դուք.
Թե որ գլեք խոսք ու վեճ,
Ձու՞կ կմնա գետի մեջ...



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԲԿԼԻԿԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Մի տղա կա մեր ճամբարում,
Վա՛յ, այդքան էլ շատակեր,
Ճաշարանին աչքը գցում՝
Սպասում է անհամբեր։
Հենց որ ճաշի ժամն է լինում,
Բոլորից շուտ է վազում,
Գիշերն անգամ այդ բկլիկը
Ճաշ է տեսնում երազում։
Մենք ճաշում ենք, դուրս ենք գալիս,
Նա դեռ ուտում է, ուտում...
— Դե հերի՛ք է, թմբուկ դառար,—
Ընկերներն են նախատում։
Երազում է մեծափո՛րը,
Դառնալ միայն խոհարար.
Նրա համար Ծաղկաձորը
Ճաշարան է, ո՛չ ճամբար։

# ԵՐՇԻԿ ՈՒՏՈՂ ՏՂԱՅԻ ԵՎ ՆՐԱ ՇԱԼՎԱՐԻ ՄԱՍԻՆ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Միջանցքները միանգամից դատարկվեցին։

— Սը՜ս, դաս է...

Հանկարծ 5-րդ «գ» դասարանի դուռը բաց է անում հերթապահ ուսուցիչը։

— Ներեցե՛ք,—ասում է նա դաս պարապող ուսուցչուհուն և դիմում դասարանին.— Երեխանե՛ր, ձեզանից որևէ մեկը հո սխալմամբ երկու շալվար չի՞ հագել...

Հարցը ծիծաղելի էր, բայց հերթապահ ուսուցչի դեմքն այնպես սառն էր և լուրջ, որ ոչ ոք չկարողացավ փռթկալ։ Մի քանիսը նույնիսկ շոշափեցին գոտիները...

— Ո՛չ։

— Ո՛չ,— լսվեց տեղերից։

— Ձեր դասընկերը դասարանում չի՛, գիտե՞ք պատճառը։

Ո՛չ։

— Ահա նա,— հերթապահը ցույց է տալիս դռան հետևում կուչ եկած տղային։

— Արսե՜ն...

— Վա՜յ, տրուսիկով է։

— Արսե՛ն, չգտա՞ր։

Արսենը լուռ էր։

— Այդպես ուրեմն,— ձեռքը բարձրացրեց ուսուցիչը,— եթե Արսենը ցանկանում է, թող նստի դասի, իսկ դուք, դասերից հետո կանցնեք պիոներական սենյակ։ Ձեր դասղեկն է պահանջել։ Բավակա՛ն է, դուք ձեզ լավ չե՛ք պահում։ Մի օր մեկի գլխարկն է անհայտանում, մյուս օրը մեկի պայուսակը, այսօր էլ՝ խնդրեմ։ Չի կարելի նման կատակներ անել... Ես այսօրվա դեպքի մասին տեղյակ եմ պահել նաև ընկեր Վարոսյանին։

Դպրոցի դիրեկտորի ազգանունը շփոթեցրեց երեխաներին։ Նրանցից ոմանք անհանգստացած, հարցական հայացքով նայեցին իրար։

Հերթապահ ուսուցիչը գնաց։

Արսենը մերկ ծնկներն իրար. քսելով, ընկերներից նեղացած, անցավ ու նստեց իր տեղը։

Ամբողջ դասարանն անհանգիստ էր։ Թվաբանության խնդիրներն էլ այդ օրը մի տեսակ ավելի էին խճճվել ու դժվարացել...

Զանգը հնչեց, 5-րդ «գ» դասարանցիները, մեկը մյուսին հրելով, լցվեցին պիոներական սենյակը։ Դասղեկը դեռ չէր եկել։

— Տղանե՛ր, ո՞վ է պահել, ասացեք, թե չէ այս անգամ պրծնել չի լինի,— հարցրեց Կամոն։

Տղաները հերթով ուսերը շարժեցին։

— Կարե՞ն։

— Չէ՛, հորս արև...

— Սահա՞կ...

— Ես այդքան խելք չունե՞մ. որ պահած լինեի, ձեզ կհասցնեի՞ այստեղ։

— Սեդրա՞կ։

— Չէ՛, այսօր ես չեմ պահել։

— Լավ, բա ի՞նչ եղավ, հո չգոլորշիացավ դրա շալվարը։

— Արսե՛ն, ա՛յ տղա, լավ հիշո՞ւմ ես, առավոտյան շալվարո՞վ ես եկել դպրոց,— կատակեց Կարենը։

Արսենը ոչ մեկի կողմը չէր նայում, անհամբերությամբ սպասում էր «դատավճռին»։

Վերջապես ներս մտան դասղեկն ու դպրոցի դիրեկտորը։

Ծռռացին նստարանները։

— Նստեցե՛ք, նստեցե՛ք,— դժգոհ ձեռքը թափ տվեց դասղեկն ու արագ անցավ իր տեղը։ Իսկ դիրեկտորը նստեց վերջին նստարանին։



— Այսպե՜ս,— սկսեց դասղեկը, հայացքը գցելով նստածներին,— ամեն օր մի նորություն ենք լսում այս դասարանից։ Սկսենք հենց այս դեպքից, ձեզ եմ հարցնում. ո՞վ է վերցրել Արսենի շալվարը, ո՞վ է պահել։

Ոչ մի ձեռք չի բարձրանում։ Դիրեկտորն անհանգիստ շարժում է ձեռքի բանալիները...

— Լռո՞ւմ եք... լա՛վ, մինչև շալվարը չգտնեք, ոչ մեկդ տուն չի գնա,— ասաց դասղեկն ու նայեց դիրեկտորին։ Վերջինս ոտքի կանգնեց։

Քար լռություն էր...

Հենց այդ պահին բացվեց դուռը և ներս մտավ դիրեկտորի փոքրիկ աղջիկը՝ Արսենի շալվարը ձեռքին։

— Վարդուհի՜, այդ որտեղի՞ց գտար,— զարմացած հարցրեց դիրեկտորը։

— Մեր տանից,— շատ հանգիստ պատասխանեց աղջիկը (դիրեկտորի ընտանիքն ապրում էր դպրոցի շենքում)։

— Ինչպե՞ս թե, ո՞վ էր տարել։

— Բոբկան,— սիրունիկ գլուխը ուսի վրա թեքելով, պատասխանեց աղջիկը։

Բոլորն սկսեցին ծիծաղել. ծիծաղում էին նաև դասղեկն ու դիրեկտորը։

— Ա՜,— բացականչեց Կարենը,— ճիշտ որ, ֆիզկուլտուրայի դասին Բոբկան մտավ հանդերձարան, ինչպես գլխի չէինք ընկնում...

Դիրեկտորը մի կերպ թաքցրեց ժպիտը և դեմքին լուրջ արտահայտություն տալով ասաց.

— Արսե՛ն, իսկ դու կարո՞ղ ես ասել, թե ինչո՞ւ մեր Բոբկան հատկապես քո շալվարն է ընտրել։ Երեխաները նորից սկսեցին քրքջալ...

— Երշի՜կ...

— Երշիկ է եղել երևի գրպանը...

— Վերցրո՛ւ շալվարդ,— ասաց դասղեկը,— վերցրո՛ւ հագի՛ր։

Արսենը վերցրեց շալվարը։ Բոլորը նորից սկսեցին ծիծաղել։ Շունը շալվարի երկու գրպաններն էլ դուրս էր քաշել և գզգզել։

— Դե՛, էլ ի՞նչ ասենք, Արսեն, Բոբկան քեզ պատժել է արդեն,— բանալիները մատների վրա խաղացնելով ասաց դիրեկտորն ու դուրս գնաց։

* * *

Դպրոցի մուտքի առաջ, փոքրիկ պոչը ցցած, կանգնել էր Բոբկան։

Արսենը ոտքը երկարացրեց, բայց շունը, հո՛պ, պոկվեց տեղից ու թռավ ցանկապատից ներս։



— Այո՛, ես լսել էի, որ դու դասերի ժամանակ էլ ես երշիկ ուտում... Հը՛, Արսեն, ի՞նչ կասես։

Արսենը ոտքի կանգնեց։

— Դասի ժամանակ չեմ...

— Կերե՛լ ես, և միշտ էլ ուտո՛ւմ ես,— տեղից վեր թռավ Արմենուհին (Արսենի կողքին նստող աղջիկը)։

Արսենը աչքի տակով նայում էր ընկերուհուն և բթի տակ ինչ-որ բան ասում։

— Սպասի՛ր, ընկեր ջան,— կուրծքը դուրս ցցելով մոտեցավ Կարենը,— ինչո՞ւ ես հալածում շանը, շատ լավ է արել. եթե մյուս անգամ դասի ժամանակ երշիկ կերար, իմացիր՝ կտանի շալվարդ ու էլ ետ չի բերի։

Արսենը մի քանի անգամ շարժեց թևի տակ դրած պայուսակը, բայց ձայն չհանեց, արագացրեց քայլերն ու, բաժանվելով խմբից, մենակ տուն գնաց։

# ԲԱՐԵՎ ՁԵԶ, ՄԱՐԴԻԿ

*ՌԱՍՈՒԼ ՀԱՄԶԱՏՈՎ*
*(Լենինյան մրցանակի լաուրեատ)*

Վաղ առավոտյան իմ ձայնն է հնչում
Բաց պատուհանից, ջինջ աղբյուրի պես։
Ինձ Զարեմա են բոլորը կոչում,
Շատ սովորական մի աղջիկ եմ ես։

Ես այս աշխարհում ծնվել եմ՝ բոլոր
Ճանապարհների սահմանի վրա,
Ուր խառնվում են վեհ ու փառավոր
Արևելքը և արևմուտքն իրար։

Ծնվել եմ աղի ալիքի վրա,
Կովկասյան բարձր լեռների գրկում,
Ուր ծով ու երկինք խառնվում իրար,
Դառնում են կապույտ ներդաշնակություն,

Ուր որ դժվար չէ առվի հատակից
Մի բուռ ջրի հետ հանել լուսնկան։
Այսպես, աշխարհում իմ ծնված օրից
Ես մի աղջիկ եմ դարձել լեռնական...

Անծանոթներին և ծանոթներին,
Եվ բրուտներին ու վարորդներին,
Եվ թիկնեղներին ու բարակներին,
Անվանիներին, հասարակներին,
Եվ նրանց, ովքեր խաղաղ են, հանգիստ,
Եվ նրանց, ովքեր զայրացկոտ են խիստ,
Եվ հպարտներին ու խիզախներին,
Եվ թախծոտներին ու ուրախներին,—
Բոլոր-բոլորին հեռու և մոտիկ
Ասում եմ սիրով.—Բա՛րև ձեզ, մարդի՛կ։

Հնաբնակներին և նորեկներին,
Պատանիներին և ծերուկներին,
Արևից այրված ու թրծվածներին
Ջեռնահասներին, ներշնչվածներին,
Շուկաների մեջ, այգում, փողոցում,
Կայարաններում, արհեստանոցում
Բոլոր-բոլորին հեռու և մոտիկ
Ասում եմ սիրով.- Բարև՛ ձեզ, մարդի՛կ։

Ծովայիններին, փոստատարներին,
Եվ անմեղներին ու արդարներին,
Խոհարարներին և արտիստներին,
Բանաստեղծներին, մինիստրներին,
Եվ պահակներին ու դերձակներին,
Ջեռնառատներին, համարձակներին,—



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Բոլորին, ովքեր վարում են, ցանում,
Կերտում են, բուժում և ուսուցանում,
Ովքեր ամենայն լավը փայփայում,
Վատին ոսոխի աչքով են նայում,—
Բոլոր-բոլորին հեռու և մոտիկ
Ասում եմ սիրով.—Բարև՛ ձեզ, մարդի՛կ։
Ահա իմ ձեռքը... Մատներն իմ ամուր
Միասին են միշտ և միահամուռ։
Եվ չկա ոչինչ անհասկանալի,
Որ ռուսն ահա և ուկրաինացին,
Հայն ու վրացին
Եվ ավարացին,
Լեռների որդիք և հարթավայրի—
Նույն դրոշի տակ աճել, զորացել,
Նույն ամուր ձեռքի մատներն են դարձել։

Հեռու և մոտիկ լայնություններում,
Ինչ լեզվով էլ որ մարդը մեր դարում
Մարդու հետ նստի ու զրույց անի,
Ինչ լեզվով էլ որ սիրտը բաց անի,
Միշտ շնորհակալ և գոհ, արդարև,
Ես նրան հպարտ ասում եմ,—Բարև՛։

*Թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆ*

# ԵՐԵՔ ՊԱՏՄՎԱԾՔ

ԱՆԱՍՏԱՍԻԱ ՍԱՐԳՍՅԱՆ

## ՁԱԽՈՐԴԸ

*Ասում են, թե կյանքում ամեն ինչ, և՛ ճախորդությունը, և՛ հաջողությունը կախված են քեզնից։ Բայց ինչքան էլ ես չարչարվում եմ, ոչինչ չի ստացվում։*

*Մայրիկս ինձ «Բուրատինո» է կոչում այն բանի համար, որ, ինչպես ինքն է ասում, իմ ձեռքերը փայտից են։ Ես միշտ անպայման մի բան թափում եմ, կոտրում, ջարդում։ Եվ ինչքան զգույշ եմ լինում, այնքան ավելի վատ է ստացվում։ Ուղղակի ճախողակ մարդ եմ։*

*Պատահեց մի դեպք, որից հետո, մի ամբողջ տարի ծաղրում էին ինձ։*

*Ահա թե ինչպես եղավ։ Ամառը մենք ապրում*



*էինք տատիկի ամառանոցում։ Փոքրիկ եղբորս մայրս այնտեղ էր ուղարկել մայիսին, իսկ ես պետք է մինչև հունիսի 15-ը դպրոց հաճախեի, այդ պատճառով էլ տատիկի մոտ էի գնում շաբաթ և կիրակի օրերը։*

*Ես պայմանավորվել էի շաբաթ օրը տղաների հետ՝ կինո գնալ։ Մայրս աշխատանքից ուշ տուն եկավ, զուգե խանութ էր գնացել։ Ես չսպասեցի նրան և դուրս գալուց առաջ գրեցի հետևյալ երկտողը. «Մայրիկ, ամենածանր իրերը թող, ես կբերեմ»։*

*Վերադառնում եմ կինոյից, և ի՞նչ, մեր սենյակի հատակը ներկված է, դա, իհարկե, պապիկիս գործն է։ Սեղանի վրա դրված է մի հսկայական ճամպրուկ։ «Մայրիկս սա ինձ համար է թողել»,— մտածեցի ես։ Բայց ինչպե՞ս հասնեմ ճամպրուկին, հատակը դեռ նոր է ներկված և բոլորովին խոնավ է։ Այստեղ ես գլխի ընկա, թե ինչ կարելի է անել. ցախատնից մի երկար տախտակ բերեցի, որի մի ծայրը սենյակի շեմքին, իսկ մյուսը՝ սեղանի եզրին դրեցի և ակրոբատի պես ճոճվելով հասա ճամպրուկին։ Ճամպրուկը իրոք շատ ծանր էր։ Ոչի՛նչ, տակից դուրս կգամ, ես մայրիկին կապացուցեմ, որ կարող եմ օգտակար գործ կատարել։*

*Հևալով հասա ավտոբուսի կանգառը։ Նստեցի հետևի նստարանին, ճամպրուկը տեղավորեցի ծնկներիս վրա, որովհետև վախենում էի հանկարծ մեջը կոտրվելու բան լինի։ Դե ես ի՞նչ գիտեի, թե մայրիկը ի՞նչ է դրել ճամպրուկի մեջ։ Վերջապես տեղ հասա։*

*Թեպետ շատ էի հոգնել, բայց գոհ էի ինձանից, որ ճամպրուկը ամառանոց հասցրի։*

*Մայրիկը, տեսնելով ինձ, զարմացած հարցրեց.*

*— Այդ ինչու՞ ես ճամպրուկով եկել։*

*— Պապիկը հատակը ներկել էր, ու ես չուզեցի բոլոր իրերը ցանցերի մեջ դնել։*

*— Բայց ի՞նչ է բերածդ,— հարցրեց մայրիկը։*

*— Ես չգիտեմ, թե դու ճամպրուկի մեջ ինչ ես դրել։ Ես բերել եմ այն, ինչ դու թողել ես ինձ համար։*

*— Ես ոչինչ չեմ թողել քեզ համար, ես ամեն ինչ ինքս եմ բերել։*

*Ես քար կտրեցի։ Նորից մի ճախորդություն։*

*Մենք բաց արինք ճամպրուկը։ Ինչե՛ր չկային ճամպրուկի մեջ. մուրճ, արդուկ, մեխեր...*

*— Երևի պապիկը սա մաքնակալի տակից հա-*

նել ու դրել է սեղանի վրա,— ծիծաղելով ասաց մայրիկը։

Ահա թե ինչու ամբողջ տարին ծաղրում էին ինձ...

## ԿՈՒԶԻԿԸ

Մենք ման էինք գալիս անտառում և պտուղներ հավաքում։ Հանկարծ թփուտի մոտից շան հաչոց լսեցինք։ Մոտեցանք և ի՛նչ տեսնենք։ Շունը թաթերով փորում է հողը և ուզում է մտնել թփի տակ։



Մայրիկը շանը մի կողմ քշեց, նայեց թփի տակ և տեսավ մի ոզնի իր ձագերով։ Մենք վերցրինք ոզնու մի ձագը ու վերադարձանք տուն։

Մայրիկը սենյակի անկյունում չոր խոտ փռեց, բույն սարքեց նրա համար։ Մենք նրան կաթով էինք կերակրում։ Պարզվում է, որ ոզնիները քաղցր բաներ են ուտում։ Մեր ոզնին շաքար շատ էր սիրում։

Մենք մեր ոզնուն Կուզիկ անվանեցինք։ Շատ էինք սիրում նրան։ Մայրիկս նրան հաճախ պահում էր ծնկներին։ Ոզնու միայն մեջքն էր սուր ասեղներով պատած, փորիկը փափուկ էր, բրդոտ։

Մայրիկը սպիտակ, շաքարի նման կոճակներով տնային զգեստ ուներ։ Կուզիկը կրծել էր մայրիկի բոլոր կոճակները, երևի կարծելով, թե շաքար են։

Կուզիկը ամբողջ օրը քնում էր անցկացնում, իսկ գիշերները վազվզում էր սենյակում մանրիկ քայլերով, կարծես թե ոտիկներին կրունկներով կոշիկներ ուներ հագած։ Երբ պատրաստվում էինք վերադառնալ քաղաք, մենք անտառ գնացինք և մեր Կուզիկին բաց թողինք իր հարազատ թփի մոտ։

Այդ օրը մենք բոլորս շատ տխուր էինք։ Նրանից բաժանվելը մեզ ցավ էր պատճառում։

## ՎԱՉԻԿԸ

Փոքրիկ Վաչիկը անհամբեր սպասում էր Նոր տարվա գալուն։ Նա շատ էր ուզում հայրիկի հետ հրապարակ գնալ, տեսնել զուգված տոնածառը և կարուսել նստել։ Բայց այնպես պատահեց, որ Վաչիկը հիվանդացավ և երկար տևեց նրա հիվանդությունը։

Երբ Վաչիկը առողջացավ, մայրը նրան զբոսանքի դուրս բերեց։

— Մայրիկ, ո՞ւր ենք գնում, տոնածա՞ռը տեսնելու,— հարցրեց Վաչիկը։

— Ո՛չ տղաս, տոնածառը արդեն վերցրել են։

— Կարուսե՞լ նստելու։

— Կարուսելն էլ են վերցրել։

— Իսկ ինչպե՞ս են վերցրել։

— Եկել են կացիններ ու մուրճեր առած քեռիներ և...

— Հրապարա՞կն էլ են վերցրել, մայրիկ... այդ դեպքում ավելի լավ է գնանք տուն,— ասաց Վաչիկը, հազիվ զսպելով հեկեկանքը։



Նկ. ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱՄՅԱՆԻ

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

Բանանիտոն բերանը բաց լսում էր, թե Ջելսոմինոն ու Կաղլիկ-կատուն ինչպես են մեկը մյուսից առաջ ընկնելով պատմում իրենց արկածները։ Նրա ձեռքին դանակ կար, բայց նկարիչն արդեն մոռացել էր, թե ինչի համար է վերցրել այն։

— Դուք ի՞նչ էիք ուզում անել դանակով,— անհանգստացած հարցրեց Կաղլիկ-կատուն։

— Հենց ես էլ այդ եմ մտածում,— պատասխանեց Բանանիտոն,— ես էլ եմ ինձ այդ հարցը տալիս։

Սակայն բավական եղավ, որ նա հայացքը պտտեցնի իր սենյակում, որպեսզի նորից ընկնի անհուսալի վիճակի մեջ։ Նրա նկարները նույնքան այլանդակ էին, ինչպես առաջ։

— Ես տեսնում եմ, որ դուք նկարիչ եք,— հարգանքով ասաց Ջելսոմինոն, որը դեռևս չգիտեր այդ մասին։

— Ես էլ էի այդպես կարծում,— տխուր պատասխանեց Բանանիտոն,— ես ինձ նկարիչ էի համարում։ Բայց, երևի, պիտի փոխեմ արհեստս և այնպիսի մի գործ ընտրեմ, որ ներկերի հետ, որքան հնարավոր է, քիչ գործ ունենամ։ Օրինակ՝ կդառնամ գերեզմանափոր և գործ կունենամ միայն սև գույնի հետ։

— Բայց գերեզմանոցում էլ ծաղիկներ կան։ Աշխարհում ամբողջովին սև և միայն սև ոչինչ չկա։

— Իսկ ածո՞ւխը,— հարցրեց Կաղլիկ-կատուն։

— Բայց չէ՞ որ, երբ ածուխը վառում են, կարմիր, սպիտակ և երկնագույն բոց է արձակում։

Սենյակում շրջելով, Ջելսոմինոն կանգ առավ երեք քթանի մարդու դիմանկարի առաջ, որը մեծ զարմանք էր պատճառել Կաղլիկ-կատվին։

— Ո՞վ է սա,— հարցրեց Ջելսոմինոն։

— Մի բարձրաստիճան պալատական է։

— Երջանիկ մարդ է։ Երեք քթով նա բոլոր տեսակի հոտերը երեք անգամ ուժեղ կզգա։

— Օ՜, դա մի ամբողջ պատմություն է։ Երբ նա ինձ հանձնարարեց նկարել իր դիմանկարը, պնդեց, որ անպայման երեք քիթ նկարեմ։ Մենք անընդհատ վիճում էինք։ Ես ուզում էի, ինչպես որ սովորական է, մի քիթ նկարել։ Հետո առաջարկեցի, որ հաշտվի գոնե երկու քթի հետ, բայց նա համառեց։ Կամ երեք քիթ, կամ դիմանկար պետք չէ։ Եվ տեսնո՞ւմ եք, թե ինչ ստացվեց։ Մի սարսափելի արարած, որով արժե երեխաներին վախեցնել։



— Իսկ սա ձի՞ է,— հարցրեց Ջելսոմինոն,— և էլի պալատակա՞ն է։

— Ձի՞... Միթե չեք տեսնում, որ կով է։

— Գուցե և կով է, բայց ինձ թվում է, թե ձի է։ Ավելի ճիշտ կարող էր ձի հիշեցնել, եթե չորս ոտ ունենար։ Ախր, սա տասներեք ոտ ունի։ Տասներեք ոտը կբավականացներ երեք ձի նկարելու համար և դեռ մի ոտ էլ կավելանար։

— Բայց կովերը տասներեք ոտ ունեն։ Դա ամեն մի դպրոցական գիտի։

Ջելսոմինոն ու Կաղլիկ-կատուն հառաչելով նայեցին իրար և մեկը մյուսի աչքերում միևնույն միտքը կարդաց։ «Եթե նա փչան-կատու լիներ, մենք նրան կսովորեցնեինք մլավել։ Իսկ այս դժբախտին մենք ի՞նչ կարող ենք սովորեցնել»։

— Իմ կարծիքով նկարը շատ ավելի կշահեր և կգեղեցկանար, եթե մի քանի ոտ ջնջվեր,— ասաց Ջելսոմինոն։

— Ա՜յդ էր պակաս. բոլորը կսկսեն ինձ վրա

---

Սկիզբը՝ նախորդ համարում։

ծիծաղել, իսկ քննադատները կառաջարկեին ինձ խելագարանոց տանել: Հիմա ես հիշեցի, թե ինչու էի դանակը վերցրել: Ես ուզում էի իմ նկարները կտոր-կտոր անել և ես հիմա անմիջապես կանեմ այդ:

Նկարիչը նորից դանակը խլեց և սպառնալից մոտեցավ այն նկարին, որը ձիու տասներեք անճոռնի ոտ ուներ և որը կոչվում էր կով: Նա ձեռքը բարձրացրեց, որ հասցնի առաջին հարվածը, բայց հետո կարծես թե միտքը փոխեց:

— Ինչքա՜ն դժվար է ամիսների աշխատանքը սեփական ձեռքով ոչնչացնելը,— հառաչեց նա:

— Ա՛յ հիանալի խոսքեր են,— ասաց Կաղլիկ-կատուն: Երբևէ, եթե ես ծոցատետր ունենամ, անպայման այդ խոսքերը կգրեմ, որպեսզի չմոռանամ: Բայց նախքան նկարը կտոր-կտոր անելը՝ ինչո՞ւ չլսեք Ջելսոմինոյի խորհուրդը:

— Դե, իհարկե,— բացականչեց Բանանիտոն:— Ի՞նչ ունեմ ես կորցնելու: Նկարը միշտ էլ կարող եմ կտրատել:

Եվ նա կտավից դանակով քերեց ներկը այնքան, մինչև որ տասներեք ոտներից հինգը չքացան:

— Ինձ թվում է, որ հիմա ավելի լավ եղավ,— խրախուսում էր Ջելսոմինոն:

— Տասներեքից հանած հինգ, հավասար է ութի,— ասաց Կաղլիկ-կատուն:— Եթե կտավի վրա երկու ձի նկարված լիներ, ամեն բան ճիշտ կըստացվեր: Ներեցեք, ես ուզում էի ասել՝ երկու կով:

— Հը, ի՞նչ է, էլի՞ մի քանի ոտ ջնջեմ,— հարցրեց Բանանիտոն: Եվ պատասխանի չսպասելով նա մի զույգ ոտ էլ քերեց:

— Եռանդո՜վ...ավելի՛ եռանդով,— խրախուսում էր Կաղլիկը,— մենք համարյա նպատակին ենք հասնում:

— Ո՞նց է հիմա:

— Թողեք միայն չորս ոտ, տեսնենք, թե ինչ դուրս կգա:

Իսկ երբ մնաց միայն չորս ոտ, հանկարծ մի թեթև խրխինջ լսվեց, և հենց նույն պահին ձին թռավ հատակին ու սկսեց վազել սենյակում:

— Ա՜խ, ինչ լավ եղավ: Ես սկսում եմ ինձ շատ ավելի լավ զգալ: Կտավի վրա ինձ համար սարսափելի նեղվածք էր:

Անցնելով պատից կախված հայելու մոտով, ձին ոտից-գլուխ չափեց իրեն և գոհ խրխնջաց.

— Ի՜նչ սիրուն ձի է: Ես իսկապես գեղեցիկ ձի եմ: Սինյորներ, չգիտեմ, թե ինչպես շնորհակալ լինեմ ձեզանից: Եթե դուք երբևէ ընկնեք մեր կողմերը, ես ձեզ հիանալի ման կածեմ:

— Ո՞ր կողմերը,— հե՜յ, կանգնիր, կա՛նգ առ,— գոռաց Բանանիտոն:

Բայց ձին արդեն դուրս էր եկել սենյակից և աստիճանների վրա էր: Երբ նա իջնում էր աստիճաններով, լսվում էին նրա սմբակների դոփյունները, իսկ շուտով մեր բարեկամները պատուհանից կարող էին տեսնել, թե ինչպես է նրբանցքն անցնում այդ հպարտ կենդանին և ուղևորվում դեպի քաղաքից դուրս:

Բանանիտոն հուզմունքից ամբողջովին կորել էր քրտնքի մեջ:



— Վերջիվերջո դա իսկապես որ ձի էր,— ուշքի գալով ասաց նա: Քանի որ այդ ասաց ինքը, ես պարտավոր եմ նրան հավատալ: Տեսեք, է՛, դըպրոցում ինձ ցույց էին տալիս դրա նկարը և սովորեցնում արտասանել «Կ» տառը, կով:

— Անցնենք առաջ,—մլավում էր Կաղլիկ-կա-



տուն,— մտածանք մյուս նկարին:

Բանանիտոն մոտեցավ բազմասապատ ուղտին: Նրա սապատներն այնքան շատ էին, որ հիշեցնում էին անապատային ավազաթմբերը: Բանանիտոն սկսեց քերել սապատները, մինչև որ վերջապես մնացին միայն երկուսը:

— Լավ է ստացվում,— ռետինագին աշխատելով ասում էր նա:— Այս նկարն էլ վատ չի ստացվում: Ինչ եք կարծում, վերջիվերջո ուղտն է՞լ կկենդանանա:

— Այո, եթե բավականաչափ գեղեցիկ լինի,— ասաց Ջելսոմինոն:

Բայց ոչինչ տեղի չունեցավ: Ուղտը հանգիստ ու անտարբեր մնաց կտավի վրա, այնպես, կարծես նրան ոչինչ չէր վերաբերում:

— Պոչե՞րը,— ճչաց Կաղլիկ-կատուն:— Նա երեք պոչ ունի: Դա ուղտի մի ամբողջ ընտանիքի կըբավականացնի:

Երբ ավելորդ պոչերն էլ անհայտացան, ուղտը վեհապանծ ցած իջավ կտավից, թեթևացած շունչ քաշեց և երախտապարտ մի հայացք նետեց Կաղլիկ-կատվի վրա:

— Ինչ լա՞վ էր, որ դու պոչերի մասին հիշեցրիր, թե չէ ես դատապարտված էի հավիտյան այդ ձեղնահարկում մնալու: Չգիտե՞ք, արդյոք, այստեղ, մոտերքում անապատ կա՞:

— Մի հատ կա քաղաքի կենտրոնում: Դա քաղաքային անապատն է, բայց այս ժամին փակ է:

— Նա ուզում է ասել քաղաքային այգի,— ուղտին բացատրեց Կաղլիկ-կատուն:— Իսկական անապատներն այստեղից երկու-երեք կիլոմետր հեռու են: Բայց աշխատիր ոստիկանության աչքին չընկնել, թե չէ քեզ կգցեն կենդանաբանական այգի:

Գնալով առաջ, ուղտն էլ նայեց հայելու մեջ և զգաց, որ ինքը գեղեցիկ է: Շուտով նա ևս թեթև վարգով կտրեց անցավ նրբանցքը: Նրան տեսնելով գիշերապահը աչքերին չհավատաց և ինքն իրեն կսմթեց, որ տեսնի հո երազում չի՞:

— Երևում է, որ ծերանում եմ,— երբ ուղտը թաքնվեց ոլորանի հետևում ինքն իրեն խոսեց ծերունին,— հիմա ես նույնիսկ հերթապահության ժամին եմ քնում և երազում ընկնում եմ Աֆրիկա: Հարկավոր է ուշադիր լինել, թե չէ ինձ կըհեռացնեն գործից:

Իսկ Բանանիտոյին հիմա՝ ո՛չ մահվան սպառնալիքը, ո՛չ էլ մի որևէ անստորագիր նամակ կարող էր կանգնեցնել: Նա մի նկարից մյուսն էր նետվում և ձայնը գլուխը գցած շարունակում էր դանակով քերել նկարները:

— Այ՛ սա իսկական վերածնություն է: Ես տաս րոպեում ավելի շատ վերածնում կատարեցի, քան հիվանդանոցում պրոֆեսորները տաս օրում:

Երբ նկարները կեղծիքից մաքրվում, իսկապես գեղեցկանում էին, դառնում էին ճշմարտացի և կենդանանում էին: Շները, ոչխարները, այծերը կտավներից ցած էին թռչում և գնում էին աշխարհում երջանկություն կամ մկներ փնտրելու, եթե դրանք կատուներ էին: Բանանիտոն միայն մի նկար մանրատեց: Դա այն պալատականի նկարն էր, որն ուզեցել էր երեք քիթ ունենալ: Այն վտանգը կար, որ եթե նա էլ մի քթով մնար, կարող էր հանկարծ կտավից ցած իջնել և նկարչին մի լավ հուպ տալ, իր հրամանը չկատարելու համար:

Ջելսոմինոն օգնում էր Բանանիտոյին: Իսկ Կաղլիկ-կատուն սկսեց հետուառաջ գնալ ու ինչ-որ բան փնտրել: Բայց նրա հիասթափված տեսքից կարելի էր գլխի ընկնել, որ գործերն այնքան հաջող չեն գնում:

— Ձիե՞ր, ուղտե՞ր, պալատականնե՞ր,— քթի տակ փնթփնթում էր նա,— և ո՛չ մի կտոր պանիր: Նույնիսկ մկները աշխատում են ձեղնահարկից հեռու փախչել: Աղքատության հոտը ոչ ոքի դուր չի գալիս: Սովը թույնից վատ է:

Սենյակի մութ անկյունը քրքրելով, նա փոշով ծածկված մի նկար գտավ, որի հակառակ կողմում բնակություն էր հաստատել հազարոտնուկը: Վըտանգ զգալով, սա իր բոլոր ոտները գործի դրեց ու փախավ: Նկարում պատկերվածը լավ երևակայության դեպքում կարելի կլիներ ընդունել որպես ուտելիքով լի սեղան:

Օրինակ, ափսեի վրա տարածվել մի կենդանի կար, որը կարող էր տապակած հավ կոչվել, եթե միայն երկու ոտ ունենար: Բայց նա այնքան ոտ ուներ, որ կարող էր հազարոտնուկի ցեղակից համարվել:

«Ահա մի նկար, որին կյանքում կուզենայի տեսնել այնպես, ինչպես կա հիմա,— մտածեց Կաղլիկ-կատուն:— Քանի տարի հա՞վ... Ինչպիսի

հարմարություն ընտանիքի, սրճարանի աթոռ կամ սոված կատվի համար: Տանիքների մեծ մասը պետք է ջնջել: Բայց ոչինչ, մնացածն էլ բավական է, որպեսզի երեք հոգի մի փոքր կշտանան»:

Նկարը նա մոտեցրեց Բանանիտոյին և խնդրեց, որ սա գործի դնի իր դանակը:

— Բայց դանակը նկարած է և չի կարող կենդանանալ:

— Մեզ էլ հենց նկարած է պետք,— պատասխանեց Կաղլիկ-կատուն:

Դրան նկարիչը չհասկացավ, թե ինչ պատասխանի: Բացի այդ նա հիշեց, որ իր նկարներով տարված երեկվանից ոչինչ չի կերել:

Հացը չկենդանացավ, բայց, միևնույն է, գոլորշի ու հիանալի բուրմունք արձակելով՝ կտավից ցած իջավ. կարծես հենց նոր էին նրան օջախից վերցրել:

— Որպես նկարիչ դու անպայման հաջողություն կունենաս,— ասաց Կաղլիկ-կատուն՝ ատամները ագահորեն հացի թևի մեջ խրելով (մյուսները նա թողել էր Բանանիտոյին ու Ջելսոմինոյին),— բայց որպես խոհարար դու արդեն ռեկորդ խփեցիր:

— Մի քիչ որ գինի լիներ,— նկատեց Ջելսոմինոն և սկսեց ուտել,— բայց հիմա երևի բոլոր խանութները փակ են: Ասենք, որ բաց էլ լինեին, մեզ համար մեկ էր, միևնույն է, փող չունենք:

Այստեղ Կաղլիկ-կատվի գլուխը մի միտք եկավ և նա Բանանիտոյին ասաց.

— Իսկ ի՞նչ կլինի, որ դու հիմա մի շիշ գինի նկարես:

— Փորձեմ,— ասաց նկարիչը ոգևորված:

Նա մի շիշ «Կյանտի» տեսակի գինի նկարեց: Երբ նա գինին ներկեց, այնքան սքանչելի ստացվեց, որ եթե Ջելսոմինոն ժամանակին շիշը չբռներ, գինին կթափվեր հատակին:

Երեք բարեկամները խմեցին գեղանկարչության, գեղեցիկ երգի ու կատուների կենացը: Սակայն երբ վերջին կենացն էին խմում, Կաղլիկ-կատուն տխուր տեսք ընդունեց: Ստիպված եղան երկար խնդրելու, որպեսզի նա ասի իր տխրության պատճառը:

— Վերջին հաշվով ես իսկական կատու չեմ,— վճռեց խոսել նա,— ես այն կենդանիներից չեմ, որոնք կես ժամ առաջ նկար էին: Ես միայն երեք թաթ ունեմ և ես չեմ կարող ասել, որ չորրորդ թաթս կորցրել եմ պատերազմում կամ տրամվայի տակ եմ գցել: Դա սուտ կլինի: Ա՜յ, եթե Բանանիտոն...

Բայց այդքանն էլ բավական էր... Նկարիչն իսկույն վերցրեց վրձինն ու վայրկենապես մի այնպիսի թաթ նկարեց, որ դուր կգար անգամ Կոշկավոր կատվին:

Իսկ ամենահետաքրքիրն այն է, որ թաթն իսկույն կպավ անհրաժեշտ տեղին և Կաղլիկ-կատուն սկզբում մի փոքր անվստահ, հետո ավելի համարձակ սկսեց քայլել սենյակում:

— Ախ, ինչ հիանալի՜ է,— մլավում էր նա:— Ես ինձ բոլորովին ուրիշ տեսակ եմ զգում: Ես այնքան եմ հիմա փոխվել, որ կուզենայի նաև փոխել անունս:

— Ա՜յ թե խելք եմ ասել,— ճակատին խփելով բացականչեց Բանանիտոն,— ես քո թաթը յուղաներկով եմ նկարել, իսկ քո մյուս թաթերն ախր կավիճով են նկարված:

— Սարսափելի ոչինչ չկա,— ասաց Կաղլիկ-կատուն,— թող մնա այնպես, ինչպես կա: Ով որ իմ թաթին ձեռք տա՝ էժան չի պրծնի: Ես իմ հին անունն էլ կթողնեմ նույնը: Որ լավ մտածենք, կտեսնենք, որ այդ անունն ինձ շատ է սազում: Չէ՞ որ պատերի վրա գրելուց իմ առաջին աջ թաթը ամենաքիչը մի կես սանտիմետրով պակասել է:

Այդ գիշեր Բանանիտոն իր մահճակալը զիջեց



Ջելսոմինոյին, իսկ ինքը պառկեց հատակին, հին կտավների կույտի վրա: Կաղլիկ-կատուն շատ հարմար տեղավորվեց Բանանիտոյի վերարկուի գրպանում և մեկը մյուսից բարձր երազներ տեսավ:

(Շարունակելի)

# Իմ մայրիկը լավն է

ԱՐԾՎԻԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Կարող եք ասել, որ բոլոր մայրիկները լավն են։ Ճի՛շտ է։ Բայց իմ մայրը ավելի լավն է։ Ինչու՞։ Սպասե՛ք, պատմեմ։

— Ես ու Մանուկը հարևաններ ենք։ Ապրում ենք նույն շենքում, բայց Մանուկը մի օր պարծեցավ.

— Մեր բնակարանը ձերից լավն է։

— Ինչու՞,— հարցրեցի,— չէ՞ որ դուք ունեք այնքան սենյակ, որքան մենք։

— Մեր բնակարանը ձերից մի հարկ բարձր է,— հպարտանալով ասաց նա։

Նեղացած գնացի տուն, պատմեցի մորս։ Մայրս լսեց ու ծիծաղելով ասաց.

— Երկուսն էլ լավն են, մի՛ նեղացիր։

Բայց մի անգամ դուրս եկա միջանցք և ի՞նչ տեսնեմ... Մանուկը՝ դատարկ դույլը ձեռքին, մեր դռան մոտ մոլորված սպասում է։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեցի նրան։

Մանուկը լռեց։ Հայտնեցի մորս։ Մայրս ժպտալով ասաց.

— Ներս կանչիր, ջրի համար է սպասում։

Ես հասկացա։ Ջուրը սակավ է, ճնշումը՝ թույլ, չի հասնում Մանուկենց բնակարանը, բակում էլ ծորակ չկա։

Մայրս դույլը լցրեց ջրով, տվեց Մանուկին և ավելացրեց.

— Երբ պետք լինի, մի՛ ամաչիր, արի՛։

Այդ րոպեին քիչ էր մնում Մանուկին ասեի. «Հիմա ո՞ւմ բնակարանն է լավ», բայց մայրս հայացքով ինձ հասկացրեց, որ կարիք չկա։

Մանուկը լավ ընկեր է։ Մենք ազատ ժամերին խաղում ենք միասին։ Չնայած մի անգամ նրա մեղքով պատժվեցի։ Պատմեմ ինչպես եղավ։ Բակում հոլ էի խաղում, մեկ էլ լսում եմ Մանուկը կանչում է.

— Արմե՜ն, Արմե՜ն... մենակ եմ, չե՞ս գա մեր տուն։

Գնացի։

— Հեռուստացույցը միացնե՞նք,— ասացի։

— Չի՛ կարելի, մայրս կբարկանա։

— Հեքիաթների գիրք չունե՞ս, կարդանք։

— Գրադարանի բանալին մորս մոտ է։

— Արի աթոռ պատրաստենք։

— Մայրս չի թողնում նման բաներով զբաղվել։

Ծվարել կանգնել էի. ինչ ասում եմ, նա՝ թե. «Մայրս չի թողնում...»

— Արի շախմատ խաղանք,— համբերությունս հազիվ պահած ավելացրի։

— Խաղալ չգիտեմ։

— Ես կսովորեցնեմ։

Մանուկը համաձայնեց. տնից բերեցի շախմատ։ Իրոք, նա չէր իմանում խաղալ, ինձ քույրս էր սովորեցրել, չնայած փղի և նավակի քայլերը մեկ-մեկ շփոթում էի, բայց Մանուկի մոտ այնպես էի ինձ ցույց տալիս, որ նրան թվում էր, թե վարպետ եմ։

Շախմատը ժամանակ շատ խլեց մեզանից։ Օրը մթնում էր։ Եկավ Մանուկի մայրը։ Երևում էր, որ նա հուզված է, վախեցա դեմքին նայել։ Մանուկը գունատվեց։



— Ցտեսությու՛ն,— ասացի ես ու դուրս եկա։

Մանուկի մայրը, ինչպես երևում է ինձնից գոհ չէր, այլապես մի բան կասեր...

Դա դեռ քիչ է, մայրս էլ մի կողմից բարկացավ։

Պարզ էր. պիտի պատժվեի: Բայց մտածում էի՝ ինչ պատիժ կտա մայրս: Չեմ թաքցնում. խիստ վարվեց. զրկեց հեռուստացույց նայելուց: Ծախմա-տը թանկ նստեց ինձ վրա: Մինչև քնելը ժամա-նակ կար: Մայրս ստիպեց առանձնանալ մյուս սենյակում. դաս պատրաստել:

Մանուկի վիճակը ինձ շատ էր մտահոգում: Խեղճ տղան. կարծես վանդակի մեջ պահված թռչուն լիներ. դպրոցից տուն էր գալիս թե չէ. մայրը դուռը կողպում էր վրան ու ասում. «Դուրս չգնա՛ս. բակի երեխաները կփչացնեն քեզ»:

Ուսումնական տարին վերջացավ: Եկան ամռան շոգ օրերը: Շատերը ընտանիքներով գնում էին ամառանոցներ: Ես խնդրեցի մորս. ինձ ուղարկի գյուղ: Շատ էի սիրում մեր գյուղը: Լեռնե՜ր. անտառնե՜ր. սառնորակ ջրե՜ր. զանազան տեսակի մրգե՜ր... Մայրս հայտնեց. որ միասին ենք գնալու գյուղ: Ուրախությանս չափ չկար: Այդ մասին պատմեցի Մանուկին. շատ ուրախացավ: Խեղճ տղան ոչ մի անգամ չէր եղել գյուղում. ամեն ինչ թվում էր հեքիաթ...

— Կգա՞ս մեզ հետ,— հարցրի:

— Մայրս չի թողնի,— կոտրած սրտով պատաս-խանեց նա:

Ես մայրիկիս խնդրեցի խոսել նրա ծնողների հետ:

— Իմ երեխան գործ չունի գյուղում.— ասել էր Մանուկի մայրը:

Ես գյուղում անչափ լավ էի զգում: Խաղում էի, լողանում. մեկ-մեկ էլ ձի էինք նստում կամ խըմ-բով գնում էինք մոշ քաղելու. անտառ էինք մըտ-նում՝ նապաստակ փախցնելու. օգնում էինք կոլ-տնտեսության այգեպանին. իսկ նա մեզ տանձ, խնձոր. ձմերուկ էր տալիս:

Երկու ամիս գյուղում հանգստանալուց հետո վերադարձա քաղաք: Կարոտել էի Մանուկին: Գյու-ղից նրա համար միրգ բերեցի: Մանուկը տխուր էր. գունատ...

Երբ ավելի փոքր էի. չէի հասկանում. թե ինչու Մանուկը հազվադեպ է ժպտում: Հիմա բավականին մեծացել եմ. հասկանում եմ. որ պատճառը մոր անտեղի խստությունն է. դրա համար էլ հաստատ ասում եմ՝ իմ մայրիկն ավելի լավն է:



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

## ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

### ՆԿԱՐՎԱԾ ԴՐԱՄՆԵՐԸ

Այնպես պատահեց, որ Ռաֆայելը բավական եր-կար ժամանակ ապրեց մի հյուրանոցում: «Հաշի-վը կփակեմ մեկնելուս



օրը»— ասել էր հյուրանո-ցի տիրոջը: Եվ ահա, նա պատրաստվում էր ճա-նապարհ ընկնել:

— Իսկ վարձը՞, հարց-րեց հյուրանոցի տերը:

— Կարող եք ստանալ,— ասաց Ռաֆայելը սե-ղանի վրայի ոսկե և ար-ծաթե դրամների կույտը ցույց տալով:

Երբ ագահ պարոնը հարձակվեց դրամի կույտի վրա, նրա ձեռքերը դի-պան դատարկ սեղանին. դրամները նկարված էին:

Այդ միջոցին հյուրա-նոցում ապրող մի օտա-րական, այնպես հիացավ նկարչի վարպետու-թյամբ, որ գնեց այդ սեղանը, վճարելով մի քանի անգամ ավել, քան Ռաֆայելի պարտքն էր:

### ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ՀԵՏԵՎԻՑ

Հանճարեղ մարդկանց պատմության մեջ հազիվ թե գտնվի վաղ հասակում արտահայտված գիտու-թյան ծարավի մի ուրիշ օրինակ, ինչպիսին ցույց տվեց Էդիսոնը:

Երբ տասներկուամյա Էդիսոնին առաջին անգամ հաջողվեց քաղաքային գրադարան հաճախելու իրավունք ստանալ, նա որոշեց գրադարանի բո-լոր գրքերը կարդալ: Էդի-սոնը սկսեց ամենաներ-քևի դարակից, որտեղ նրան հանդիպեցին այն-պիսի գրքեր, ինչպիսին են Նյուտոնի «Հիմունք-ները», Յուրի «Տեխնիկա-կան դասընթացը» և Բրուտոնի «Անատո-միան»: Գործից ազատ ժամերին նա համառորեն շարունակում էր այդ աներևակայելի աշխա-տանքը: Եվ ահա նա կար-դաց այն բոլոր գրքերը, որոնք տեղավորված էին մոտ հինգ մետր երկարու-



թյուն ունեցող դարակում, բաց չթողնելով ոչ մի հատոր, ոչ մի էջ: Կար-դալով մետրերով գրքեր, Էդիսոնը եկավ այն եզրա-կացության, որ ավելի լավ է ընթերցել ոչ թե պատա-հած ամեն մի գիրք, այլ որոշակի ընտրությամբ կատարելով:




ՌԱՖԱՅԵԼ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

Քանի աղջիկս փոքր էր, շանը ասում էր ավա։ Այդպես էլ անցավ և մեր մյուս երեխաներին, և նրանք էլ շանը ավա էին ասում։ Երբ հետո մենք ինքներս ունեցանք շուն, այդպես էլ նրան կանչեցինք՝ Ավա։

Մեր Ավան շագանակագույն, սպիտակ կրծքով, միջին չափի, աշխույժ, ուրախ շուն էր։ Իր արտաքինով հիշեցնում էր որսորդական շներին։ Իսկ մեր կատուն սև էր, անբիծ, միայն աչքերն էին փայլում։ Երեխաները նրան սկզբում Սևուկ էին ասում, իսկ հետո՝ աղավաղելով անունը, սկսեցին Սեբի կանչել։

Շատ հետաքրքիր էր սրանց նիստն ու կացը Իրար հետ «շուն ու կատու» չէին, մի տեղ ուտում, մի տեղ քնում էին։ Շունը միշտ զիջող էր, առաջնությունը կատվին թողող, նրա պաշտպանը։ Բայց Ավան այնուամենայնիվ, մնում էր շուն և իր ցեղական ատելությունը դեպի կատուները չէր կորցրել։ Վայ էր, մեր բակում մի օտար կատու երևար, վազում էր հետևներից ու խեղճերին լարում։ Իսկ եթե տեսներ, որ Սեբիին նեղն են գցում, վրաներն էր պրծնում, գզում նրանց։ Սակայն լինում էին դեպքեր, որ սրանց մեջ էլ էր մեկ-մեկ «սև կատու» անցնում և տեղի էին ունենում փոքրիկ ընդհարումներ, բայց, իհարկե, առանց գզգզոցի։ Մի անգամ Ավան կզռմռար, Սեբին էլ ճանկով նրա դնչին կհասցներ և, վերջ։

Երկուսն էլ մեր տան սիրելիներն էին, երեխաների կողմից սարսափելի երես առած, հատկապես կնոջս՝ Սոֆիկի կողմից։ Սոֆիկը մինչև դրանց չկերակրեր, մեզ չէր հիշի։ Պատահում էր նաև, որ շան համար նա պատրաստում էր այնպիսի ախորժալի կերակուր, որ երեխաները խնդրում էին մի բաժին էլ իրենց տալ։ Մեր տանը մինչև շան երևալը կաթը հազվագյուտ էր լինում, տանտիրուհիները՝ Սոֆիկն ու մեր տատիկը, իրենք չսիրելով կաթ, գլուխ չէին դնում ունենալ այդ հիանալի սննդամթերքը, հակառակ, որ ես ու փոքր տղաս շատ էինք կաթ սիրում։ Եվ ահա շան ու կատվի համար սկսեցին շատ կանոնավոր կաթ գնել, դե՛, մենք էլ ընկանք «շան ջրերը», ու մեզ էլ էր մեկ-մեկ կաթից բաժին հասնում։

Մեր Սեբին, ինչպես աշխարհի բոլոր կատուները, սիրում էր ջերմությունը։

— Սեբի՛, Սեբի՛, — երեխաները դես-դեն ընկած կատվին էին փնտրում։

Իսկ նա ոչ մի տեղ չէր երևում։ Հետո հայտնաբերվում էր անկողնու մեջ կծկված։ Այնպիսի հըմտությամբ էր թաքնվում, որ իրեն չնկատեին ու չվռնդեին։ Ավան ետ չէր մնում Սեբիից, շատ էր սիրում ցատկել բազկաթոռին ու բազմել, ըստ երևույթին, լավ հասկանալով, որ բազկաթոռը բազմելու համար է։ Այս արտոնությունը տարածվել էր և անկողնու վրա։ Նա շատ հարմար տեղավորվում էր, մարդու նման գլուխը դնում թախտի կլոր բարձիկներին ու քնում։ Միայն գոռոց կամ փայտի տեսքն էր, որ նրան ստիպում էր ցած իջնել, այն էլ այնպես ծուլորեն, դանդաղ, որ կարծես մեզ զիջելով է այդ անում, որպեսզի չնեղանանք։ Ավան ու Սեբին գիշերները քնում էին միջանցքում, որտեղ ձմեռը այնքան էլ տաք չէր լինում։ Երբ Սեբիին տաք սենյակից դուրս էինք անում միջանցք գիշերելու, նա զգուշությամբ գալիս էր քնած շան մոտ, բարձրանում վրան և տեղավորվում գլխին։ Շունը չէր առարկում։ Բայց կատուն, երբ քնած վիճակում աննկատելի սահելով, հասնում էր շան քթին ու ակամայից կոտրում հանգստությունը, Ավան վեր էր թռչում, մի հատ «հա՛մ» անում, թափ տալիս վրայից կատվին ու քնում, մինչև փիսոն նորից փակի դունչը ու գլորվի ցած։ Ու հետո էլի մուշ-մուշ քնում էին միասին։

Ավան սիրում էր խաղալ կատվի հետ։ Նա վերցնում էր կատվի գլուխը, լրիվ տեղավորում իր բերանում և այդպես, ամբողջ մարմինը կախ գցած՝ սենյակից սենյակ էր տանում։ Իսկ Սեբին ոչ միայն չէր դիմադրում, այլև շնորհակալ էր։ Դա երևում էր նրանից, որ երբ շունը նրան դնում էր

գետնին, կատուն փախչելու փոխարեն քսվում էր շանը։

Այդպես էլ մեծացան միասին, ոչ սովորական մտերմությունը պահպանելով մինչև վերջ։

Ավան շատ էր սիրում երեխաներին, հետները խաղում էր, հետևներից ընկնում։ Սիրում էր և մեր հետևից գալ՝ ուր էլ գնայինք։ Դժվարությամբ էինք տուն ուղարկում։ Երբ տրամվայ էինք նստում, խեղճը հևիհև վազում էր տրամվայի հետեվից։ Մեկ անգամ էլ հասել էր մինչև կայարան, որը մեր տնից շատ հեռու է, ու մեն-մենակ վերադարձել էր տուն։ Եվ ի՞նչպես էր տան տեղը գտնում, շատ զարմանալի է։ Անծանոթ, հեռավոր, խուլ տեղից կգար, կհասներ տուն։

Մի անգամ էլ այսպես հետևներից ընկավ ու կորավ։

Անցան օրեր, մեր Ավան չկար։ Ամեն տեղ փնտրեցինք, բայց իզուր։

Հույսներս արդեն կտրել էինք և միայն շան հետ կապված որևէ առարկա կամ դեպք մտաբերելուց հիշում էինք մեր Ավային։

Ամռանը մեր փողոցի անկյունում հանդիպեցի մի ուշագրավ պատկերի։ Շների մի մեծ ոհմակ որ երևի մեր թաղի շներից էր կազմված, բարձր հաչոցով շրջապատել էին մի շան։ Շունը կեղտոտ



էր, ցեխոտ, հազիվ էր նշմարվում մաշկի շագանակագույն լինելը։ Աչքիս ընկավ վզից կախված պարանի կտորը։ Մտքովս կասկած անցավ, չլինի՞ սա մեր Ավան է։ Մտածեցի, թեև անցել է վեց ամիս, այնուամենայնիվ, անունը տամ, գուցե ինձ հիշի։ Ձայնս լսելուց շունը մի տեսակ սթափվեց, լարվեց։ Նկատելի էր, թե ինչպես է ուսումնասիրում ինձ, աղիողորմ նայում իմ կողմը և հայացքով օգնություն խնդրում։ Ես բարկացա նրան շրջապատող շների վրա, քար նետեցի վրաները, որ փախչեն։ Շները մի պահ ցրվեցին, բայց այդ օտար շունը ինձ չմոտեցավ. ա՞հն էր մեծ, թե՞ հավատ չէր ընծայում իմ բարի ցանկությանը։ Իսկ ինչու՞ մյուսների նման չփախավ, այլ մնաց տեղում նստած։ Ինքս մոտեցա, և նա ինձնից խուսափեց։ Համոզվեցի, որ մեր Ավան չէ։ Երբ ես հեռացա, շները նորից մոտեցան նրան։ Թողնել շանը այդ վիճակում, վտանգավոր էր. կգզեին։ Եվ ես որոշեցի Սոֆիկին կանչել օգնության։ Նա ավելի շուտ կճանաչի Ավային, շունն էլ նրան, չէ՞ որ Սոֆիկի հետ ավելի էր կապված։ Շուտով վերադարձանք երկուսով։ Շները, իհարկե, դեռ այնտեղ էին և չէին թողնում, որ օտար շունը առաջ գա։

— Մեր Ավան է, մեր Ավան, — ասաց Սոֆիկն ու անվախ մոտեցավ նրան։

Ես այդ ժամանակ շներին փախցնում էի։ Շունն էլ իր հերթին պատռելով շրջապատող օղակը, հասավ Սոֆիկին։ Երկու կորցրած հարազատների նման իրար գրկախառնվեցին։ Հուզիչ էր պատկերը, ես իմ արցունքները թաքցնելու համար բարկացա Սոֆիկի վրա, որ բաց թողնի կեղտոտ շանը։ Ոչ մի կասկած, որ սա Ավան է, և ոչ մի ուրիշ շուն չէր կարող այդպես արտահայտել իր սերն ու ուրախությունը։ Իսկ այդ դաժան շները համառորեն մնացել էին տեղում, չէին ցրվում, գռմռում էին, ահ տալիս։ Ստիպված գրկեցի Ավային, ուղղակի փախցրի այդ ոհմակից ու վազեցի դեպի տուն։ Սոֆիկն էլ շներին քշելով ինձ էր հետևում։

Երեխաների համար շան վերադարձը անսպասելի էր։ Նրանք ցնծում էին։ Մեր ուրախությանը չափ չկար։ Սերին ետ չէր մնում և մասնակցում էր մեր ուրախությանը, պոչը ցից պահած շան շուրջն էր պտտվում, մեր ոտների արանքներով շրջում, քսվում շանը, իր վրա հրավիրելով նրա ուշադրությունը։ Շունն էլ մեկ-մեկ նրան էր նայում, հոտոտում։ Դե էլ ինչպե՞ս կարելի էր չպատվել այդպիսի շանը և թույլ չտալ, որ թախտին բազմի։ Ինչպե՞ս չսիրել այդպիսի շանը, որ վեց ամիս անց պոկվելով գերությունից, կտրելով իրեն ազատությունից զրկող պարանը, հասել է տուն։ Ավան, իհարկե, ոչ թե կորցրել էր մեր տան ճանապարհը, այլ նրան բռնել էին և կապել։

Մեծ պատվի մեջ էր Ավան։ Բայց մեր տանը ո՞ր կենդանին չէր պատվի մեջ։

# Կարիր ինքդ








Շատ լավ է, երբ քո շրջազգեստը կարում ես ինքդ։ Դա հաճելի է և՛ քեզ համար, և՛ շրջապատի։

Որպեսզի կարել սովորես, անհրաժեշտ է նախ և առաջ սիրես այդ գործը։

Կարել կարող են բոլորը։ Կարելի է կարել շրջազգեստներ, խալաթներ, յուբկաներ, սարաֆաններ։

Նախքան շրջազգեստի ձևելը, անհրաժեշտ է տվյալ զգեստի ձևվածքը ամենայն ճշտությամբ գծել թղթի վրա, կտրել այն և առանձնացնել բոլոր դետալները։ Յուրաքանչյուր շրջազգեստ ձևելիս պետք է չմոռանալ կարաբաժինները։

Շատ հարմար շրջազգեստ կարելի է կարել չթից, շտապելից, սատինից, մանր դաջերով կամ փոքրիկ վանդակավոր կտորից (նկ. № 1 ա, 1 բ, 1 գ)։













Շրջազգեստը չափափորձման պատրաստելու համար, շուլալակարել կոֆտայի դետալները և սեղմոնների տեղերը, որից հետո նույն կարով միացնել յուբկայի առանձին մասերն ու սեղմոնները։ Կոֆտան յուբկայի հետ միացնելու համար, նշանակել նրանց հետևի ու առջևի կենտրոնները և միացնել միմյանց։ Որից հետո ծալել առաջամասի ծալվող կտորը՝ վերևից մինչև յուբկայի այն մասը, որտեղ վերջանում է այն (ինչպես












ցույց է տրված նկարում), միացնել գրպանները, վերջում կարել ուսակարերը։

Չափափորձման ժամանակ ուշադրություն դարձնել զգեստի կրծքամասի նստվածքի (նեղ կամ լայն), գոտկակարի վերև կամ ներքև լինելու, վզատեղի և թևքատեղի փորվածքների վրա։ Թերություններ լինելու դեպքում՝ ուղղել, շտկել։ Չափափորձումից հետո մեքենակարել նույն հերթականությամբ։ Վզի բացվածքի և թևքատեղի շուրջը եզրակարել 2,5 սմ լայնություն ունեցող շեղ կտորով. կարելու ժամանակ շեղ կտորը ձգել։ Պարանոցի շուրջը և գրպանների վրա հորիզոնական ուղղությամբ կարելի է կարել կտորին համապատասխան գույնի երիզ, այն կճոխացնի զգեստը։

Կոկիկ և գեղեցիկ զգեստ կարելի է կարել միագույն կամ մանր ծաղիկներով չթից, շտապելից, կամ միագույն արհեստական բրդյա կտորից (Նկ. № 2 ա, 2 բ)






Շրջազգեստի յուբկայի ծալքերը հեշտ և շուտ կատարելու համար սկզբից միացնել նրա առանձին մասերը, վերջին ծալքը թողնել բաց։ Ծալել փեշածալքը, գաղտնակարել և լավ արդուկել։

Ծալքերի տեղերը՝ վերևի և ներքևի, նշանակել (միաժամանակ փեշածալքը ծալել գոտկատեղի վրա)։ Նշանակված համապատասխան կետերը արդուկելով միացնել իրար։ Որից հետո դարսել ծալքերը և շուլալակարել. սկզբից փեշագիծը, հետո գոտկագիծը։ Ծալքերը դարսելուց հետո, թարս երեսից, խոնավ շորի օգնությամբ արդուկել՝ նստացնել ծալքերը։ Կարել կողակարը ու միացնել կոֆտայի հետ։

Չափափորձումից հետո սկզբից մեքենակարել ուսակարերը, որից հետո պարանոցի բացվածքը՝ իրենց համապատասխան կտորներով, կրծքասեղմոնը, կողակարերը, վերջում միացնել թևքերն ու կլապանները։

Կտորի քիչ լինելու դեպքում, ծալքերի խորությունը կարելի է վերցնել 7-8 սմ։

ՕՖԵԼՅԱ ԱՂԱՅԱՆ

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 5

«ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԱՐԴՅՈՔ»



«ԽԱԶԲԱՌ—ԿԵՆԴԱՆԻՆԵՐ»—Ուղղահայաց — Կատու։ Գայլ։ Կապիկ։ Կով։ Գորտ։ Ձի։ Ոզնի։ Կուղբ։ Առյուծ։

Հորիզոնական — Նապաստակ։ Կենգուրու։ Փոկ։ Վագր։ Կրիա։ Ուղտ։ Շուն։ Ընդգծված վանդակում՝ սկյուռ։

«ՉՈՐՍ ԿԱՏՈՒ, ՉՈՐՍ ՄՈՒԿ»



«ՌԵԲՈՒՍ»—Շիրվանզադե։ «Նամուս»։ «Քաոս»։ «Արտիստը»։ «Կրակ»։ «Պատվի համար»։ «Հրդեհ նավթագործարանում»։

| | | | |
|---|---|---|---|
| Տ 5 | Ա 6 | Ճ 15 | Ա 16 |
| Ծ 4 | Ք 7 | Ա 14 | Ր 17 |
| Ը 3 | Գ 8 | Ե 13 | Տ 18 |
| Ն 2 | Ի 9 | Ն 12 | Ջ 19 |
| Ի 1 | Մ 10 | Ն 11 | Ա 20 |

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌԱԾ — Տաշած քարը գետնին չի մնա.

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ

Շուշանավարդ Ալթունյանը, Անահիտ Ասատրյանը, Գոհար և Սամվել Սիմոնյանները (Երևան), Կլավա Խաչատրյանը (Լենինական), Ալինա Անանյանը, Գևորգ Մխիթարյանը (Կիրովական), Նորա Թոխասունցը (Գորիս), Ռոզա Մաթևոսյանը (Սպիտակ), Լևոն Մուրադյանը (Ախուրյանի շրջան, Հայկական գյուղ), Լիզա Գրիգորյանը, Համլիկ Վարդանյանը (Արտաշատ) և ուրիշները։




Խաղահրապարակը չորս կողմից սահմանագծում ենք և բաժանում երկու հակադիր մասերի (ափերի): Խաղի մասնակիցները ընտրում են երկու «ձկնորս» ղեկավար: Մնացածները համարվում են ձկներ: Սրանք կանգնում են ափերից մեկում, իսկ ձկնորսները՝ ձեռք-ձեռքի բռնած կանգնում են հրապարակի մեջտեղում՝ դեմքով դեպի ձկները:

Ձկնորսների հրամանով՝ «մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, վազի՛ր», ձկները վազում են (լողում են) հրապարակի մի մասից դեպի մյուսը, այսինքն մի ափից մյուսը: Ձկնորսները որսում են ձկներին այնպես, որ «ձուկը» մնա երկու ձկնորսների ձեռքերի մեջ: Բռնվողը միանում է ձկնորսներին և այսպես կազմում են ցանց: Հետո ձկնորսները նորից են հրաման տալիս, խաղը վերսկսվում է: Ձկները կարող են ցանցից դուրս վազել, քանի դեռ նրա երկու ծայրերը չեն փակվել: Ուժով չի կարելի ցանցից դուրս գալ: Նոր բռնված «ձկները» միանում են ցանցին, և նրա չափերը գնալով մեծանում են: Խաղը ավարտվում է այն ժամանակ, երբ բոլոր ձկները բռնվում են: Եթե որսի ժամանակ ցանցը «պատռվում է», այսինքն խաղացողները բաց են թողնում ձեռքերը, ապա վերջին որսի ժամանակ բռնված ձկները ազատվում են և «լողում» մյուսների հետ:

Նա, ով խաղի ժամանակ դուրս կգա հրապարակի սահմաններից, համարվում է բռնված:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ Գր. ԽԱՆՋՅԱՆԻ*

# ԽԱՉԲԱՌ

Արամը ներս մտավ այն պահին, երբ Սուրիկն ու Արեգը շախմատի տախտակը բաց արած, նոր սկսում էին խաղաքարերը դասավորել: Տղաները թեև ուրախացան ընկերոջ համար, բայց մի փոքր էլ հիասթափվեցին: Պարզ է, որ խաղալ չէին կարող: Երեքով շախմատ խաղալ չի կարելի. բացի այդ, Արամը շախմատ չի սիրում:

Հենց այդ ժամանակ էլ բակ մտավ Արուսը: Հիմա արդեն նրանք չորս հոգի էին և պետք է մի նոր հետաքրքիր բան մտածեին: Հո չէի՞ն կարող կիրակին անցկացնել պարապ խոսակցությամբ, մանավանդ, որ քննությունն հաջող անցկացնելուց հետո հարկավոր էր լավ հանգստանալ:

— Ի՞նչ խաղանք, տղաներ,— անաց Արեգը շախմատը փակելով:

— Տղաներ գումարած մի աղջիկ,— նկատեց Արուսը:

— Գումարած երկու աղջիկ,— ասաց Սուրիկը, ցույց տալով ներս մտնող Սեդային:

Դրությունը բարդանում էր: Այժմ հարկավոր էր այնպիսի խաղ խաղալ, որ և՛ աղջիկներին հարմար լիներ, և՛ տղաներին: Պարզ է, որ նման դեպքերում ո՛չ աթուրման է հարմար և ո՛չ էլ լախտին:

— Եկեք խաչբառ խաղանք,— ասաց Արամը:

— Դու ուզում ես ասել խաչբա՞ռ լուծենք,— ուղղեց նրան Սեդան:

— Ո՛չ, ինչպես որ ասացի՝ խաղանք: Միայն թե դուք մի փոքր սպասեք, ես գնամ Վազգենին կանչեմ:

Վազգենը եկավ ու շատ ոգևորված սկսեց բացատրել, թե ինչպես պետք է «խաչբառ» խաղալ: Խաղը բարդ չէր, և երեխաներն այնքան հափշտակվեցին նրանով, որ չնկատեցին, թե ինչպես օրն անցավ:

Դե քանի որ «Խաչբառն» այդքան հետաքրքիր է, մենք էլ որոշեցինք մեր ընթերցողներին սովորեցնել այդ նոր խաղը:

Նախ՝ հարկավոր է մի փոքր աշխատել:

Ստվարաթղթից կտրատեք երկու քառակուսի սանտիմետրանոց կտորներ՝ 134 հատ: Դրան-




ցից ամեն մեկի վրա պետք է գրել այբուբենի տառերից մեկը և նրա արժեքը:

Դուք գիտեք, որ «Ա» տառը շատ է հանդիպում, դրա համար էլ նրա արժեքը էժան է, ընդա-

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 10330 Պատվեր՝ 1303։ Տպաքանակ՝ 11700։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/VIII 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան փ., № 91։*

Գինը 20 կ.



մենք մեկ միավոր: «Բ»-ից միայն 3 քառակուսի կա, դրա համար էլ արժեքն ավելի բարձր է՝ 4 միավոր: Ներքևում տրվում են այբուբենի տառերը, այդ տառերով պատրաստվող քառակուսիների քանակը, իսկ փակագծերում յուրաքանչյուր տառի արժեքը:

Ա—12(1), Բ—4(4), Գ—4(4),
Դ—2(5), Ե—12(1), Զ—2(6),
Է—1(8), Ը—1(10), Թ—2(6),
Ժ—1(10), Ի—10(1), Լ—3(5),
Խ—2(6), Ծ—1(8), Կ—5(3),
Հ—3(5), Ձ—1(8), Ղ—2(6),
Ճ—1(10), Մ—5(2), Յ—2(6),
Ն—8(1), Շ 1(8), Ո—4(3),
Չ—2(6), Պ—2(6), Ջ—1(8),
Ռ—1(8), Ս—5(2), Վ—5(2),
Տ—4(3), Ր—8(1), Ց—4(4),
ՈՒ—6(2), Փ—1(8), Ք—1(8),
և—1(10), Օ—1(8), Ֆ—1(10):

Քառակուսիները պատրաստելուց հետո ձեզ պետք չէ այս բոլորը հիշել, քանի որ քանակն իմանալու կարիք չկա, իսկ միավորները գրվում են տառերի կողքին այնպես, ինչպես ցույց է տրված նկարում (№1):

Երկու քառակուսի էլ դատարկ թողեք: Դրանք «կախարդներն» են, որոնք կարող են ուզած տառը դառնալ: Ենթադրենք, Դուք ուզում եք կազմել «քնար» բառը: Բոլոր անհրաժեշտ տառերն ունեք, բայց «Ք» չունեք:

№ 2

Եթե դուք «կախարդ» ունեք, ապա կարող եք «Ք»-ի փոխարեն դնել այդ դատարկ քառակուսին: Հետևյալ խաղացողն էլ «Ք» տառը ունի, բայց «սեղան» բառը կազմելու համար «Ղ» չունի: Այդ դեպքում նա կարող է իր մոտ եղած «Ք» տառը դնել «քնար»-ի սկզբում և «կախարդըն» օգտագործել որպես «Ղ»:

Երբ 130 խաղանիշերը պատրաստ լինեն, ձեզ կմնա պատրաստել նաև տախտակը: Դա բոլորովին էլ դժվար չէ: Նայեցեք գծագրին: Տախտակը ևս քառակուսի է և կազմված է 225 վանդակից (15×15), որոնք ունեն խաղանիշերի մեծությունը (2 սմ × 2 սմ): Բացի սովորական, չներկված վանդակներից, խաղատախտակի վրա կան նաև գունավոր վանդակներ: Կապույտ վանդակը ցույց է տալիս, որ նրա վրա ընկած տառը կրկնակի պետք է հաշվել: Սև վանդակի վրա ընկած տառը կունենա եռակի գին: Եթե դուք մի բառ եք կազմում, որի մի տառը ընկնում է դեղին վանդակի վրա, այդ դեպքում ամբողջ բառի արժեքն է կրկնակի դառնում: Կարմիր վանդակի վրա ընկնելիս, բառը եռակի արժեք է ստանում:

Խաղին կարող են մասնակցել 2, 3, 4 և նույնիսկ 5 կամ վեց հոգի: Նստում են սեղանի շուրջը և յուրաքանչյուրը խաղանիշերից վերցնում է յոթ հատ: Ինչ խոսք, խաղանիշերը շուռ տված են լինում, որպեսզի վերցնողը չիմանա, թե ինչ տառեր է վերցնում: Խաղը տանում է այն մասնակիցը, ով հավաքում է 101 միավոր: Ենթադրենք թե խաղացողներից մեկն ունի «Ա», «Զ», «Կ», «Մ», «ՈՒ», «Տ», «Ե» տառերով խաղանիշեր: Սրանցից նա կարող է կազմել «կատու» բառը և դնել տախտակի վրա (առաջին սկսողն այնպես է դնում, որ իր տառերից մեկը ընկնի կենտրոնի աստղանիշ վանդակի վրա): Բառը կազմելուց հետո նա «շուկայից» վերցնում է ևս 4 խաղանիշ, որպեսզի դարձյալ 7 հատ ունենա: Հետևյալ խաղացողը պետք է այնպես դնի, որ օգտագործի արդեն դրված տառերից մեկը կամ մի քանիսը: Այսպես օրինակ, դրված «կատու» բառի վրա կարող է նա կազմել «տետր» բառը, ունենալով միայն մեկ «Տ» (Նկ. 2):

Խաղի ընթացքում յուրաքանչյուրն աշխատում է օգտագործել ավելի թանկարժեք խաղանիշեր և զբաղեցնել գունավոր վանդակները: Այսպես օրինակ, եթե «կատու» բառը կազմելիս սովորական վանդակներում տրվում է 9 միավոր, ապա եթե «Տ» տառն



ընկնի սև վանդակի վրա՝ կտրվի 15 միավոր: Կամ եթե «Կ» տառըն ընկնի կապույտ վանդակի վրա, իսկ «Ու» տառը՝ կարմիր, այդ դեպքում կհաշվեն այսպես. Կ-ի կրկնակին = 6-ի, Ա = 1-ի, Տ = 3-ի, Ու = 2-ի: Եղավ 12: Քանի որ կարմրի վրա ընկել էր «Ու» տառը, բառի արժեքը մեծանում է երեք անգամ, այդ պատճառով էլ տրվում է 36 միավոր: Ավելի լավ է, երբ մտածելու համար ժամկետ է սահմանվում, ասենք՝ 1 րոպե: Հակառակ դեպքում խաղը կարող է ձգձգվել: Բառերը պետք է կարդացվեն ձախից-աջ և վերից-վար, ինչպես խաչբառերում: Բառերը պետք է լինեն միայն գոյականներ, ուղղական հոլովով և եզակի թվով: Հատուկ անունները չեն գրվում:

Եթե տրված րոպեի ընթացքում դուք չկարողանաք որևէ բառ կազմել, կորցնում եք ձեր քայլի իրավունքը: Դրա փոխարեն իրավունք եք ստանում փոխելու ցանկացած թվով խաղանիշեր, թեկուզ բոլոր 7-ը:

Բառերը կրկնել չի կարելի: Երբ հաշվում են բառի արժեքը, ապա դրա մեջ պետք է հաշվել նախորդ բառերի այն տառը, որն օգտագործվել է տվյալ բառը հաշվելիս (այդ բառը կարող է լինել նոր բառի և՛ սկզբում, և՛ վերջում, և՛ մեջտեղում): Բայց եթե այդ օտար բառը գունավոր վանդակի վրա է, ապա երկրորդ անգամ այն չի կրկնապատկվում կամ եռապատկվում:

Երեխանե՛ր, սովորեցեք «Խաչբառ» խաղը: Դա շատ հետաքրքիր խաղ է: Թե՛ մեծերը և թե՛ փոքրերը մեծ հափշտակությամբ կարող են խաղալ այս խաղը, որը սոսկ խաղ չէ: Այն կօգնի, որպեսզի դուք զարգացնեք, հարստացնեք ձեր բառապաշարը և գիտելիքները: